# ԵՐԳ ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

*ԷԴՎԱՐԴ ԱՎԱԳՅԱՆ*

Նա ծնվել է լուրբ ապրիլին,
Աչքերով ջինջ, կապույտ, հստակ,
Սիրտը նման բորբ արևին,
Բոցկլտում էր մեծ կրծքի տակ:
Նա հեռացավ ցուրտ հունվարին,
Երբ որ բուքն էր փայլում դրսում,
Ցավը պատեց ողջ աշխարհին,
Մարդիկ էին լալիս, մրսում...
Բայց գիտեին նրանք այնժամ
Իրենց կյանքի փորձով խորին,
Որ հաղթվել է ցուրտը դաժան
Մեր աշխարհում արևային:
Ձմեռներ են եկել-անցել,
Նորից եկել, սակայն հիմա
Նրա գործն է հավերժացել,
Որպես գարուն երկրի վրա:

Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ




Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ

№ 4

ԱՊՐԻԼ

1956 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 28-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

«Մենք կգնանք այլ ճանապարհով»

Գործ՝ նկ. Պ. ԲԵԼՈՈՒՍՈՎԻ



# ԼԵՆԻՆ ՔԵՌԻՆ

ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

I

Հայրը զենքով եկավ գործարանից այդ օրը,
Դեմքը խիստ էր, անգամ մի քիչ մռայլ:
Երբ մոտեցավ, ուզեց գրկի հորը՝
Կամաց մի կողմ հրեց հայրը նրան:

«Անխոս նստեց թեյի: Միտքը դուրսն էր, հեռուն էր:
Աչքը երկա՜ր-երկա՜ր հառել էր մի բանի:
Դեմքին դեռ մնացել էր գործարանի մուրը:
Այդ երեկո խոժոռ էր հայրն Իվանի:

«Գնում ենք,— մորն ասաց,— մենք լեռների վրա.
Հանել է լեռներին մեր դեմ էլի Անտանտը:
Բայց հույս ունենք, կնի՛կ, որ կջարդենք նրանց,
Կշպրտենք — անթիվ տանկերո՛վ էլ գան թե՛:

«Դենիկինն էր երեկ, հետո Կոլչակն եկավ.
Ու լեռներն են հիմի... Ոչի՛նչ, կնի՛կ,—
Կարմիր Բանակը մեր բանվորական
Սովորել է քշել նրանց բնից...»

Այսպես երկար խոսեց հայրը մինչև գիշեր,
Խոսեց կռվի մասին՝ բուրժույի դե՛մ:
Անցած հազար-հազար դեպքեր հիշեց,
Հիշեց հուլիս ինչ-որ ու հոկտեմբեր:

Եվ նա տեսավ, տեսավ, թե ինչպես հոր
Աչքերը հուր դարձան հետզհետե.
Լուսարձակներ երկու դարձան ոնց որ,
Ոնց որ ռումբեր, որ նա պիտի էգուց նետե:

Ու վառելով այդպես իր բորբոքուն հայացքը՝
Հայրը թռավ հանկարծ, ելավ ոտքի:
Եվ Իվանին թվա՛ց թե
Այրող գնդակ անցավ իր հոր մտքից:

Ոտքի թռավ այդպես ու սրբելով քրտինքը՝
Հայրը ասավ.— «Արդյոք հասկանո՞ւմ ես, կնի՛կ,—
Մեր զորքերին էգուց խոսելու է ի՛նքը,
Ինքը Լենի՛նը մեզ պիտի ճամփա դնի...»

Հայրը այսպես ասաց ու գնաց քնեց,
Որ առավոտ ծեգին գնա բանին:—
Բայց խոսքերը նրա վերջին էն:
Վառվեցին սրտում Իվանի...

II

Հարկ չկա երկար պատմելու
Այդ բանվոր խոխի՝ այդ Իվանի մասին:
Կապույտ աչքեր ուներ, զանգուր գլուխ.
Դե ռուս տղա էր մի՝ ութ տարեկան հազիվ:

Իր բանվոր հոր հետ միասին
Գործարան էր գնում նա երբեմն:
Կամ հավաքած իր քաջ ընկերներին դրսի՝
Նա խաղում էր «Կռիվ բուրժույի դե՛մ»:

Զինվոր էր լինում միշտ ինքը,
Նստած ձեռնափայտին պապի՝
Քշում էր փայտե ձին, մինչև ջերմին քրտինքը
Ողողելով մարմինը՝ վերջ տար թափին:

Մտածում էր Իվանը.— երբ մեծանա
Պիտի շոֆեր դառնա, կամ օդաչու.
Պիտի մտնի հետո — Կարմիր Բանակ...
— Դեռ սպասի՛ր, բուրժո՛ւյ.
— Դեռ կգա՛ Վա՛յնկա-օդաչուն,—
— Դեռ մեծանա՜...

Սակայն հայրը էգուց պիտի գնա...
Պիտի ճամփա դնի նրանց — ընկեր Լենինը...
Պիտի խոսքեր ասի նրանց էգուց:
Իսկ ի՞նքը...
Պիտի այսպես տնում էլի նստած մնա՞—
Արդեն հասակն առած պատանի է թեկուզ...

Եվ նա գիտե՛ արդեն Լենին քեռուն,
Հրեն նայում է նա այնտեղ պատից՝
Խորամանկ մի ժպիտ աչքերում,
Ահագին մի միտք ճակատին:

Այդ նա՛ է, Լենի՛նը: Այսինքն նա,
Որ ղեկավարն է բանվոր դասի.
Նրա նկա՛րն է միշտ պլակատների վրա,
Միշտ նա՛ է, ամենուր՝ Մարքսի հետ միասին...

Հայրը հաճա՜խ նրան ցույց է տվել երկու՝
Այդ մեծերի պատկերքը:
Անգամ այնտեղ—նրա այբուբենի գրքում՝
Նրանց նկարը կա:
Սովորել է հորից և գիտե՛ նրանց երգը՝
«— Ե-լի՛-ի՛-ի՛ր-բո-ղո-քի՛-ի՛-ի՛ր-բան-վո՛-ո՛-ո՛ր
դա-սա-կա՛-ա՛-ա՛րգ...»

Պատմել է հայրը նրան,
Որ Լենին քեռին
Խելացի է, մեծ է ու քաջ:
Այնքա՜ն, այնքա՜ն, այնքա՜ն,
Որ աշխարհքում ուրիշը — այդպիսին չկա:
Պատվիրել է, որ ինքն էլ երբ մեծանա՝
Երթա նրա — այդ մեծ Լենին-քեռու ճամփով,
Որի վրա թեկուզ հազար փուշ կա ցանած,
Բայց գնում են որով գյուղացի բանվոր...

Բա՜ս.
Այսպիսին է Լենին-քեռին:
Եվ վաղը նա ի՛նքը պիտի խոսի:
Պիտի անցնի իր հայրը՝ զենքը ձեռքին—
Եվ Լենինին լսի...

Այդ հո նման է — զարմանք բանի՜...

Եվ որոշում է Իվանը.
Ինչ էլ լինի՝
Վաղն առավոտ կանուխ պիտի փողոց գնա
Եվ տեսնի — ընկեր Լենինին:

III

Արդեն գնացել էր հայրը, երբ արթնացավ:
Շտապ հագավ շորերը և թռավ փողոց:
Վռազ, վռազ, վռազ անցավ իրենց փողոցը
Եվ ընկավ Կարմիր Հրապարակը՝
բանվորներով ողող:

Ծփում էր Կարմիր Հրապարակը,
Ինչպես մարդկային մի անտառ:
Հավաքվել էր կարծես
Աշխարքը բովանդակ:
Ողջը բանվոր մարդիկ,
Հոր պես հագած:
Դրոշակներ անթիվ,
Անթիվ պլակատ:

Հրմշտկելով մարդկանց ու բոթելով՝
Փորձեց առաջ երթալ, հորը կոչել.





Փորձեց ելնել կողքի մի բանվորի վրով՝
Բայց բանվորը — պապի ձեռնափայտը հո չէ՞ր:

Այդպես սեղմած — մնաց:
Փորձեց էլի:
Պատահեց մի մարդ հայհոյող:
Նորից մնաց՝ հոգին մորմոքով լի:
Բայց ի՞նչ տեսներ — իր այն մի թիզ բոյով.

Հանկարծ մի ծով ամբոխ
Ոնց որ գոռա,
Դղրդաց հրապարակը,
Գոռաց ուռռա:
Հետո լռեց ամբոխը.
Բանվոր մի կին
Իր կողքի ընկերոջը
Շշնջաց՝
«Լենի՛նը...»
Փսփսաց նա էլ կողքինին:
Ու շրթից շուրթ անցավ՝
«Լենի՛ն, Լենի՛ն...»

Հասկացավ Իվանը
— Այնտե՛ղ է նա...
Շփոթված՝ գլխարկը հանեց—
Եվ սեղմեց ատամները՝ բարկությունից դեղնած:
Էլ ճար չկար: Տեսավ՝ տեղ չե՛ն տա իրեն:
Եվ որոշեց՝ անի, ինչ էլ լինի:—
Ոտքը խրեց հանկարծ գրպանը կողքինի—
Եվ բարձրացավ վրեն...
Թռավ ուսին նստեց
Մի բանվորի.

Բայց բանվորը ներքև շպրտել
Չփորձեց էլ նրան նորից:

Պտույտ եկավ գլուխը, սիրտը ամուր բակեց:
Կարծես աշխարհը ողջ նվիրեցին նրան:
Նայեց... Լենին-քեռին կանգնած էր տախտակե
Ամբիոնի վրա...
Ձեռքը առաջ մեկնած, գլուխը բաց,
Ինչպես տնում կախած այն նկարի խորքից—
Իր հայրիկի ձայնով, մի փոքր բարձր՝
Նա պատգամ էր ասում բանվորական զորքին...

Եվ Իվանին հանկարծ այնպես թվաց,
Թե տեսել է ինքը նրան վաղուց.
Որ այդ Լենին-քեռին պիտի սիրեր իրան,
Երբ տեսներ «բուրժույ», «զորք» խաղալիս:
Ու մտածեց՝ էգուց երթա տեսնի նրան,
Ասի՝ ինձ էլ ղրկի, գնամ բանակ,

Ասի՝ ուզում եմ ես կարմիր շոֆեր դառնամ—
Լենին-ֆեռուն բոլոր իր մտքերը բանա...

Այսպես՝ աչքերը չիռ Լենին-ֆեռուն հառած՝
Երազում էր Իվանը։
Հանկարծ լռեց Լենինը։
Ու դղրդաց նորից բանվորական ուռան.
Ձեռքը մեկնեց առաջ — ու բղավեց ինքն էլ։
Ձորքը ծփաց հետո ու շարժվեց առաջ։
Ու դրոշի վրա դիմացի նա
Տառ-տառ կարդաց վաղուց իմացած իր բառը.
«Երրորդ Ինտերնացիոնալ»։
Դրոշակներ նորից։ Այդ ինչքա՞ն են...
Եվ կապելով իրար տառերն հազիվ՝
Կարդաց նորից Իվանը՝
«Կորչի՛ բուրժուազին»։

Երգում էր զորքը «Ինտերնացիոնալը»։
Ինքն էլ գիտեր երգել։ Երգեց։ Նայեց հեռուն,
Զինվորների նման, գլուխը բաց՝
Երգում էր երգը նույն — Լենին-ֆեռին...

Ու խանդոտ մի բոց աչքերին՝
Նայեց նորից Իվանը... Տեսավ՝ հրե՜ն
Հայրը քայլում է՝ մեծ մի հրացան ձեռին—
Ու նայում է, նայում Լենին-ֆեռին...

Ուզեց կանչի նրան,
Բայց այդ պահին հանկարծ
Մի անռելի ուռա
Կրկին զնգաց։
Դոռում էր զորքը ողջ,
Ինչքան որ ձայն ուներ.
Ախ, ունենա՜ր ինքն է՛լ
Մի բարձր ձայն զոնե...

Թնդում էր օդը
Նրանց ձայնից,
Ինչպես որոտը՝
«Լենի՛ն, Լենի՛ն»։
Ու ինքը, Լենինը, կանգնած այնտեղ...
Նման էր ողջը-երազի...

Եվ որոշեց Իվանը, որ անպայմա՛ն երբա—
Իրա բոլոր մտքերը Լենին-ֆեռուն ասի...
Երբա ասի, որ ինքը կուզե շոֆեր դառնալ,
Կամ օղաչու կարմիր՝ թռչել անահ...
Այդ հարազատ, այդ մեծ Լենին-ֆեռու առաջ
Իրա բոլո՛ր, բոլոր զաղտնիքները բանա...

# ՀԻՇՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ՄԱՍԻՆ

ՎԼԱԴԻՄԻՐ ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉ

## ԼԵՆԻՆԸ ՀԱՆԳՍՏԱՆԱԼԻՍ




Թվականի ամռանը Վլադիմիր Իլյիչն իրեն շատ հոգնած էր զգում։ Նա չէր քնում, գունատվել էր, ուժեղ գլխացավեր էր ունենում։ Մենք բոլորս նկատում էինք, որ Վլադիմիր Իլյիչն իրեն վատ է զգում և պնդում էինք, որ անպայման հանգստանա։

Հենց այդ ժամանակ ես ուղևորվեցի Մուստամյակ կայարանը՝ իմ ընտանիքի մոտ, որն ապրում էր այնտեղի ամառանոցում։ Վլադիմիր Իլյիչը մի քանի անգամ մեզ մոտ գալու ցանկություն էր հայտնել, բայց գործերը շատ էին. չէր կարողանում։ Մեկնելուց առաջ ես նորից հիշեցրի Վլադիմիր Իլյիչին, Նադեժդա Կոնստանտինովնային և Մարիա Իլյինիչնային, որ նրանց համար սենյակները պատրաստ են, թեև հույս չունեի, որ Վլադիմիր Իլյիչը կկտրվի պետերբուրգյան շոգերից։

Եվ հանկարծ մյուս օրը երեկոյան ժամը իններին նայում եմ և չեմ հավատում աչքերիս. մեզ մոտ է գալիս Դեմյան Բեդնին՝ իր լայն մեջքով ծածկելով մյուսներին, իսկ նրա հետևից փոքրիկ ճամպրուկները ձեռքներին գալիս էին Վլադիմիր Իլյիչն ու Մարիա Իլյինիչնան։

Այնուամենայնիվ Վլադիմիր Իլյիչը որոշել էր հանգստանալ։

Նա այնքան էր վարժվել ծպտյալ լինելուն, որ այս անգամ էլ իր սովորության համաձայն կայարանից ուղղակի մեզ մոտ չէր եկել, այլ կառք էր նստել ու գնացել Դեմյան Բեդնու մոտ և արդեն այնտեղից, երբ կառապանը հեռացել էր, նրանք ճանապարհ էին ընկել դեպի մեր տուն՝ ոտքով անցնելով մեկ ու կես կիլոմետր տարածություն։

...Երեկոն իջավ, և մենք հավաքվեցինք պատշգամբում։ Շուրջը տարածվել էր երեկոյան մի հրաշալի խաղաղություն։ Քամին հազիվ էր տա-

տանում երեկոյան մթնշաղի նուրբ շղարշը։ Բորբ վերջալույսը ոսկեզօծել ու բռնկել էր լեռների հեռուն, դաշտերը լցվել էին կարծես մանիշակի գույներով, հսկայական հրդեհի հրացոլքով բռնկվել էր պողպատափայլ լճակի անեզր հայելին։ Սկզբում վախվխելով, իսկ հետո ավելի բարձր ու համարձակորեն ձայն տվին իրար գիշերային թռչունները։ Ինչ-որ տեղ, շատ մոտիկ, բուի սուր ծղրտոցից մի կողմ նետվելով թևածեցին վախեցած չղջիկները։

Վլադիմիր Իլյիչը հենվել էր թիկնաթոռին և ընկել մտածմունքների մեջ։ Լուռ էինք նաև մենք, հասկանալով, որ խոսակցությունն ավելորդ է։

Շուրջը անդորրություն էր իշխում։

— Ինչ լա՜վ է,— մեղմորեն շշնջաց Վլադիմիր Իլյիչը,— ապա վեր կացավ և կամացուկ գնաց իր սենյակը։

Կինս՝ Վերա Միխայլովնան, անհանգստանալով Լենինի անքնության համար, խնդրեց ընդունել այն քնաբեր կանաչավուն դեղը, որ նա նախօրոք պատրաստել էր։ Վլադիմիր Իլյիչը խոնարհաբար խմեց և դանդաղորեն բարձրացավ վերև։

— Միայն թե քներ,— շշնջաց Վերա Միխայլովնան։

Մենք՝ ցածում մնացածներս իրար հետ խոսում էինք կիսաձայն, քայլում էինք ոտքերի մատների վրա, վախենալով խանգարել հունիսյան սքանչելի գիշերվա լռությունը, որը պարուրում էր Վլադիմիր Իլյիչի հանգիստը։

Առավոտյան մենք իմացանք, որ Վլադիմիր Իլյիչը իսկապես քնել էր։ Այդ գիշեր նա քնեց ավելի շատ, քան վերջին ժամանակները։

Նա արթնացավ թարմացած և պայծառ տրամադրությամբ։

Քանի գնում, Վլադիմիր Իլյիչն ավելի շատ էր քնում և ավելի կայտառանում։

Հաճախ նա Մարիա Իլյինիչնայի հետ, իսկ երբեմն էլ բոլորս միասին գնում էինք լճափ՝ զբոսնելու։ Վլադիմիր Իլյիչը սիրում էր նստել լճափին և երկար ժամանակ նայել ջրերին։ Մի քանի անգամ ես նրա հետ գնացի լողանալու։

Վլադիմիր Իլյիչը սքանչելի լողորդ էր։ Լինում էր, որ լողանալով հեռանում էր ափից հեռու, հեռո՜ւ և այնտեղ պառկելով ալիքների վրա՝ օրորվում։

Ես նախազգուշացրի Վլադիմիր Իլյիչին, որ լճում սառը ջրերի հոսանք կա, որ նա հրաբխային ծագում ունի և այդ պատճառով էլ շատ խորն է, ասի, որ լճում ջրապտույտներ ու ջրափոսեր կան, որ այնտեղ շատ մարդիկ են խեղդվել. մի խոսքով, հարկավոր է զգույշ լինել և հեռու չլողալ։

— Խեղդվո՞ւմ են, ասում եք,— հարցնում էր Վլադիմիր Իլյիչն ու հանգիստ հանվում։

— Այո, խեղդվում են, ա՛յ վերջերս էլ...

— Է՜, մենք չենք խեղդվի... ասում ես սառը ջրի հոսա՞նք կա, դա արդեն տհաճ է... Դե, ոչինչ, արևը մեզ կտաքացնի... խո՞րն է։

— Ի՜նչ խոսք, շատ է խոր։

— Հարկավոր է փորձել, հասնել հատակին...

Ես հասկացա, որ ավելորդ է այդ մասին նրան որևէ բան ասելը։ Նա, ինչպես իսկական սպորտսմեն, ավելի շատ էր ոգևորվում այդ պատմություններից։

Դեռ ուշքի չես եկել, իսկ նա արդեն վազում է լճի թեք ծանծաղուտով, հետո հանկարծ սուզվում ջրի տակ ու կորչում։ Եվ նա երկար ժամանակ չկա ու չկա։

Այդ րոպեներին ինչպիսի մտքեր ասես որ չէին ծագում գլխումս։ Եվ հանկարծ նա անսպասելիորեն երևում էր հեռվում, շուռ գալիս մեջքի վրա, կամ ջրից դուրս թռչում մինչև գոտկատեղը և երկու ձեռքով հարդարում թաց մազերը։ Հետո ձեռքով սրբում էր երեսը և բարձր ձայնով կանչում ինձ.

— Դուք ինչո՞ւ եք սպասում։ Այստեղ հրաշալի՜ է, շա՜տ լավ։

Եվ հանկարծ նա նորից անհետանում է։ Սպասում ես, սպասում, բայց չկա ու չկա։ Նորից է դուրս գալիս, բայց այնքան հեռու, որ գլուխը հազիվ է երևում։ Պառկում է մեջքի վրա, հանգըստանում, ապա շրջվում է և ջուրը ճողփելով զարմանալի արագությամբ առաջ սլանում, կարծես կատեր լինի։

Եվ նորից է անհետանում։

Ահա, կարծես թե որոշել է տուն վերադառնալ։ Թափով շուռ է գալիս մեջքի վրա և ամբողջ ընթացքով առաջ սլանում։ Ձեռքի դաստակները հազիվ են նշմարվում գոտկատեղի մոտ։ Քանի գնում, նա մոտենում է ափին և թվում է, որ հիմա դուրս կգա։ Բայց ոչ մի կերպ չի կարող զրկել իրեն այդ բավականությունից։ Միանգամից գլխկոնձի է տալիս, անհետանում, դուրս է թռչում ջրից և նորից սկում։

«Վերջապես ե՞րբ պիտի ալիքները նրան ափ բերեն»,— անհանգիստ մտածում էի ես։

Եվ ահա նա նորից է երևում և ճեղքելով ալիքները, գալիս դեպի ափ... Ու վազելով ծանծաղուտով ափ է դուրս գալիս։

— Վերջապե՜ս։



Վ. Ի. ԼԵՆԻՆԸ Վ. Դ. ԲՈՆՉ-ԲՐՈՒԵՎԻՉԻ հետ Կրեմլի բակում։ 1918 թ. հոկտեմբեր

Շատ ցուրտ է։ Գոլոր է լիճը, գոլոր է լճի տարբեր ջերմաստիճանը։ Ասում է, թե ինչպես է ընկել սառը հոսանքի մեջ ու դողվել, իսկ հետո արևի տակ տաքացել։

Ես անհանգստանում էի Վլադիմիր Իլյիչի համար։ Չէ՞ որ լիճն իրոք վտանգավոր էր։ Ֆիննական ձկնորսներն անգամ, որոնք ծնվել են այդտեղ, վախենում էին ափերից հեռու լողանալ։

Ի՞նչ անել։

Որոշեցի Վլադիմիր Իլյիչից թաքուն նավակը պահել լողանալու տեղից ոչ-այնքան հեռու։ Ես լավ թիավարող էի և մի ժամանակ մրցություններում առաջին տեղն էի գրավում։ Հենց նույն օրը ես գնացի նավակ վերցնելու։

Ինձ ընդառաջ են գալիս և հարցնում.

— Այդ ո՞վ էր երեկ ձեզ հետ լողանում։ Ա՛յ թե լողորդ է, հա՞։

— Բալթիական նավատորմի ծովայիններից է, իմ ազգականը,— հանուն գաղտնապահության, առանց ամաչելու, ստում եմ ես։— Եկել է հանգստանալու, դե այստեղ գտել է իր հարազատ տարերքը և բադի պես իրեն ջուրն է գցում…

— Անմիջապես երևում է, որ ծովային է… Ո՞նց է լող տալիս, է՛։

Եվ մեզ մոտ տարածվեց բալթիական նավատորմի սպայի՝ հիանալի լողորդի հռչակը։

## ՁԻՆՎՈՐԻ ՀԱՑԸ



Կառավարությունը վերցնելով իր ձեռքը, բոլշևիկների պարտիան զբաղվեց ամենաանհետաձգելի գործերով։ Հարկավոր էր ժողովրդին տալ խաղաղություն, դադարեցնել Գերմանիայի հետ մղվող պատերազմը, որ սկսել էր ցարը։ Պետք էր կալվածատերերից խլել հողը և տալ գյուղացուն, կարգավորել սննդամթերքի դրությունը, իսկ 1917 թվականին դրությունն անմխիթար էր. մարդիկ քաղաքներում սովի էին մատնված։ Անհրաժեշտ էր կտրուկ միջոցներ ձեռք առնել, և կառավարությունն այդպես էլ արեց։

Կապիտալիստներից անմիջապես վերցվեցին ալյուրով ու հացահատիկով բեռնված էշելոնները, որոնք կանգնած էին Պետրոգրադի երկաթուղային ճանապարհների վրա։ Ալյուրի մեծ պաշարներ հայտնաբերվեցին խոշոր ալրաղացների և հացի խանութների տերերի մոտ։

Այդ միջոցառումների շնորհիվ մեզ սկսեցին քարտերով օրական մեկ ֆունտ հաց տալ։ Բայց շրջաններից հաց չէր ստացվում և շուտով նորից

*ստիպված էին տնտեսել, պակասեցնել հացի բաժինը։ Այնպես եղավ, որ Պետրոգրադում մենք օրական ստանում էինք մինչև հիսուն գրամ հաց։ Եվ ահա, մի օր էլ, Սմոլնիի պարետ ընկեր Մալկովը հայտնեց ինձ, որ այլևս ոչինչ չի մնացել, անգամ հիսուն գրամ հաց հնարավոր չի տալ։ Այն ժամանակ կառավարությունը գտնվում էր Սմոլնիում։*

*Ես շտապում էի Ժողովրդական Կոմիսարների Խորհրդի Գործերի Վարչություն։ Այնտեղ պետք է հեռագրեր ստացվեին այն մասին, թե Պետրոգրադը երբ կարող է գավառներից հաց ստանալ։*

*Մոտավորապես առավոտյան ժամը յոթն էր։ Քիչ հետո Գործերի Վարչություն եկավ մի զորացրված զինվոր։ Այդ ժամանակ արդեն Գերմանիայի հետ հաշտություն էր կնքված, և Հայրենիք մեկնելուց առաջ զինվորները հաճախ գալիս էին մեզ մոտ։ Մենք նրանց տալիս էինք հողի մասին Սովետական կառավարության ընդունած դեկրետը, որը տպագրված էր գրքույկի ձևով։*

*Ես օրվա փոստն էի նայում և խնդրեցի զինվորին, որ սպասի ինձ։ Նա կանգնեց Գործերի Վարչության մեծ սենյակը ընդունարանից բաժանող ճաղերից այն կողմ և հետաքրքրությամբ դիտում էր շուրջը։ Այդ պահին ինձ մոտեցավ մեր բուֆետի աշխատակցուհի Մանյան։*

*— Ի՞նչ անել, Վլադիմիր Դմիտրիևիչ, չէ՞ որ մեզ մոտ ոչինչ չկա. ո՛չ շաքարի և ոչ էլ հացի կտոր, միայն թեյ կա և աղ,— և նա ցույց տվեց թեյի սկուտեղը, որի վրա դրված էին երկու բաժակ թեյ և մի պնակ աղ։— Դե, ինչպե՞ս սա մատուցել Վլադիմիր Իլյիչին, չէ՞ որ նա սոված է,— լացակումած ասաց նա։*

*Զինվորը լսում էր մեր խոսակցությունը։*

*— Դա արդեն չեղավ,— հանկարծ բարձր ասաց նա,— ում-ում, բայց Վլադիմիր Իլյիչին մենք կկերակրենք։*

*Եվ նա ուսից իջեցրեց զինվորական պարկը, կոշիկի ճտքից դուրս բերեց դանակը, արձակեց պարկը, հանեց հացի մի կլոր բուխանկա, դրեց կրծքին և միանգամից երկու կես արեց։ Բուխանկայի կեսը նա ետ դրեց պարկի մեջ, ապա կտրուկ զինվորական քայլերով մոտեցավ Մանյային և մյուս կտորը դրեց սկուտեղի վրա։*

*— Ահա՛, այս կտորն էլ Վլադիմիր Իլյիչին,— ասաց նա։*

*— Շնորհակալությո՜ւն, զինվո՛ր,— ուրախացավ Մանյան և անմիջապես գնաց Վլադիմիր Իլյիչի առանձնասենյակը։*

*Մի քանի րոպեից հետո Վլադիմիր Իլյիչը բացեց իր առանձնասենյակի դուռը և, դիմելով զինվորին, ամբողջ սենյակով մեկ բարձր ասաց.*

*— Շնորհակալությո՜ւն, հարգելի ընկեր, այդպիսի համեղ զինվորական հաց դեռ երբեք չէի կերել...*

*— Այդ նա՞ է, ի՞նքը, Վլադիմիր Իլյի՞չը... ա՛յ, ա՛յ, ա՜յ,— շփոթված արտասանեց զինվորը,— ի՜նչ մարդ է, է՜, Լենի՜ն... Այդպիսի չնչին բանի համար ի՜նչ սրտանց շնորհակալ եղավ... Մե՛րն է նա, Վլադիմիր Իլյիչը։*

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳԵՐԲԸ



*մեն ինչ մեր երկրում նոր ստեղծվեց։ Պետական գերբն էլ՝ ժողովուրդների պատմության մեջ դեռևս նմանը չունեցող, աշխարհում առաջին բանվորագյուղացիական պետության գերբն էլ պետք է նորը լիներ։*

*1918 թվականի սկզբին ինձ մոտ բերեցին գերբի նկարը, և ես անմիջապես ներկայացրի Վլադիմիր Իլյիչին։ Այդ ժամանակ Վլադիմիր Իլյիչն իր առանձնասենյակում զրուցում էր Յակով Միխայլովիչ Սվերդլովի, Ֆելիքս Էդմունդովիչ Ձերժինսկու և մի ամբողջ խումբ ընկերների հետ։ Ես նկարը դրեցի սեղանին, Լենինի առաջ։*

*— Դա ի՞նչ է, գե՞րբ... Հետաքրքիր է տեսնել։— Եվ նա թեքվեց սեղանի վրա։*

*Բոլորը շրջապատեցին Վլադիմիր Իլյիչին և նրա հետ միասին սկսեցին դիտել գերբի նախագիծը։*

*Կարմիր ֆոնի վրա շողշողում էին ծագող արեգակի ճաճանչները՝ շրջապատված ցորենի խուրձերով, որոնց մեջտեղում իրար են խաչաձևվում մուրճն ու մանգաղը, իսկ խուրձերի կապերից վերև, դեպի արևի ճառագայթները մի սուր էր բարձրանում։*

*— Հետաքրքի՜ր է. գաղափար կա, բայց ինչի՞ համար է սուրը,— ասաց Վլադիմիր Իլյիչը և նայեց մեզ,— մենք պայքարում ենք, մենք կռվում ենք ու պիտի կռվենք, քանի դեռ չենք ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրան և մեր երկրից չենք վռնդել սպիտակ գվարդիականներին ու ինտերվենտներին։ Բայց մեզ մոտ բռնությունը չի կարող համարվել գլխավորը։ Նվաճումներ մեզ պետք չեն, նվաճողների քաղաքականությունը խորթ է մեզ*

*համար։ Մենք չենք հարձակվի, բայց եթե կմղենք թշնամուն, մեր պատերազմը պաշտպանողական է, և մեր խորհրդանիշը սուրը չէ։ Մենք պետք է սուրն ամուր պահենք մեր ձեռքերում, որպեսզի պաշտպանենք մեր պրոլետարական պետությունը մինչև այն ժամանակ, քանի դեռ մեզ մոտ թշնամիներ կան, քանի դեռ մեզ վրա կհարձակվեն, քանի դեռ մեզ սպառնում են, բայց դա չի նշանակում, որ ընդմիշտ այդպես կլինի... Երբ կհաշտվի և կիրականացվի ամբողջ աշխարհի ժողովուրդների բարեկամությունը, սուրը պետք չի գա... Մեր սոցիալիստական պետության զերբից մենք պետք է հեռացնենք սուրը...— Եվ Վլադիմիր Իլյիչը սրածայր մատիտով նկարի վրայից ջնջեց սուրը։— Ա՛յ, այսպես լավ է. եկեք հաստատենք նախագիծը, իսկ հետո կնայենք և ապա կքննարկենք Ժողկոմխորհում։ Դա պետք է շուտ անել...*

*Եվ նա նկարի տակ գրեց իր անվան սկզբնատառերը։*

*Ես զերբի նախագիծը վերադարձրի նկարիչ Անդրեևին, որը գտնվում էր Լենինի առանձնասենյակում։ Նա լուռ նստած բազմոցին, քանդակում էր Վլադիմիր Իլյիչին։ Անդրեևը նորից նկարեց զերբը, ամեն ինչ արեց ցայտուն ու արտահայտիչ և, իհարկե, վերացրեց սուրը։*

*Դա Ռուսաստանի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկայի զերբի նախագիծն էր, որը Վլադիմիր Իլյիչի դիտողության համաձայն ուղղվեց և հաստատվեց 1918 թվականի հուլիսի տասնինինին։*

*Սովետական Միության զերբում նույնպես կա մուրճ ու մանգաղ և ծագող արեգակի ճաճանչներով ողողված ոսկե խուրձեր։*

*Խաղաղության և աշխատանքի այդ պայծառ խորհրդանիշների ներքո ապրում է սովետական ժողովուրդը և նրանց հետ գնում դեպի կոմունիզմ։*

## ԼԵՆԻՆԻ ԱՆՈՒՆՈՎ

Լենինի մահից հետո Կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեի պլենումը առաջարկություն մտցրեց պիոներական կազմակերպությունը կոչել Լենինի անունով։

Եվ ահա պարզ ու արևոտ մի օր՝ 1924 թվականի մայիսի քսաներեքին Մոսկվայի փողոցներում, այս ու այն կողմից սկսեցին լսվել պիոներական երգերի զիլ հնչյունները ու թմբուկների զարկերը։ Կրասնայա Պրեսնյայից, Սոկոլնիկիից, Խամովնիկիից ու մյուս ծայրամասերից դեպի քաղաքի կենտրոնն էին քայլում պատանի պիոներների ջոկատները։

Նրանք գնում էին Կարմիր հրապարակ, որպեսզի ընդունեն մեծ Լենինի անունը և երդում տան Կոմունիստական պարտիային՝ Իլյիչի պատգամներին ընդմիշտ հավատարիմ մնալու համար։

Մեծ հուզմունքով էին կարդում երեխաները Կոմերիտմիության Կենտրոնական Կոմիտեի դիմումը ուղղված պիոներներին։

«...Վլադիմիր Իլյիչ Լենինը միշտ էլ հատուկ սիրով էր վերաբերվում երեխաներին...

...Բոլոր պրոլետարական երեխաները պետք է իմանան Իլյիչի կյանքն ու պայքարը։

Սովորել, պայքարել ու ապրել, ինչպես ապրում ու պայքարում էր Իլյիչը։ Դա է ամենագլխավոր գործը...

Դուք պետք է արժանի լինեք այն մեծ անվանը, որը գրված է ձեր դրոշի վրա։

Պատանի, առույգ, խիզախ պիոներնե՛ր, կարմիր դրոշի ներքո համառորեն քայլեցեք Իլյիչի ուղիով»։

Այդպես Սովետական երկրի պիոներները արժանացան պատանի լենինյանի բարձր կոչմանը։

Տասնյակ տարիներ են անցել. նրանք արդարացնում են այդ փառավոր անունը՝ պիոներական նորանոր գործերով։

## ՆԿԱՐԸ

### Վ. ՏԱԼՅԱՆ

Լենին պապիկի նկարը պատին
Շուշիկը խփեց իր ձեռքով.
Հանկարծ նա մուրճով զարկեց մատիկին,
Լուռ արցունք թափեց զուլալ հատիկով,
Ա՜խ, ինչքա՜ն ցավեց մատը փոքրիկի...
Իսկ նա քաքցրեց աչքից պապիկի։
Ձեռքը թափ տվեց, դեն զցեց մուրճը
Եվ աչքի պոչով դիտեց իր շուրջը։
Մայրիկը եկավ արցունքին նայեց,

Գրկեց աղջկան, շոյեց, փայփայեց...
— Շա՞տ ցավեց, Շուշա՛ն, աղջի՛կս,— ասաց։
— Ո՛չ, ո՛չ, մայրի՛կ ջան... շշնջաց կամաց.
Ապա հաստատեց.— Ցավեց, ոչինչ...
Նկարը, մի տե՛ս, հո քեզ չի՞ մի քիչ։
Եվ այսպես, խաղով, աչքերը շաղոտ,
Ջնջեց նա ցավն իր, մոտեցավ պատին...
Նրան ժպտում էր մեծ Լենին պապին։

# ԴԱՐԱՎՈՐ բարեկամություն

Ռ. ՄԽԻԹԱՐՅԱՆ
(Հին բոլշևիկ, մայիսյան ապստամբության մասնակից)

Հայ և ադրբեջանցի ժողովուրդները դարեր շարունակ բարեկամներ են եղել։ Նրանք միասին հաճախ ապստամբել են պարսից խաների ու օսմանյան փաշաների, մուսավաթականների ու դաշնակների դեմ։

Հայ և ադրբեջանցի գյուղացիները իրար հետ կապված են եղել ամենուրեք։ Նրանցից ամեն մեկը ուներ իր բարեկամը, իր դոստն ու քիրվան. նրանք գիտեին նույնիսկ միմյանց երեխաների անունները, ծննդյան թվերը։

Ամռան շոգերին ադրբեջանցին ամբողջ ընտանիքով ամառանոց էր գալիս իր բարեկամ հայի տունը, իսկ հայը վաղ գարնանը անասունները տանում էր իր բարեկամ ադրբեջանցու գյուղը, որովհետև Ադրբեջանում գարունը շուտ է բացվում։

Խանխլար գյուղում մենք մի բարեկամ ունեինք, որին Սոյուն ամի էինք ասում։ Մենք ծանոթ էինք նրա երեխաների հետ։ Սոյուն ամու կինը, որին մենք Ֆաթմա մայրիկ էինք ասում, անչափ սիրում էր մեզ և մինչև անգամ հորեղբորս տղային որդեգրեց և անունն էլ Սլոյման դրեց։ Քանի-քանի անգամ Ֆաթմա մայրիկի մոտ եմ գնացել ու շաբաթներով մնացել սարում։ Երբ հարևանի կանայք հարցնում էին, թե՝ Ֆաթմա խալա, էդ ո՞ւմ երեխան է, նա պատասխանում էր. «Իմ երեխան է, ումն է»։

Վերջին անգամ Սոյուն ամուն և Ֆաթմա մայրիկին տեսա 1918 թվականի աշնանը։ Իսկ նրանց որդիների հետ մենք մինչև այժմ էլ շարունակում ենք մեր բարեկամությունը։ Մի անգամ, երբ ես փախա Դիլիջանի բանտից, որտեղ բանտարկված էի ռևոլյուցիոն գործունեության համար, և գնացի Խանխլար գյուղ, որպեսզի Սոյուն ամու օգնությամբ գնամ Աղստաֆա, իսկ այնտեղից էլ Թիֆլիս, գյուղամիջում հանդիպեցի Սոյուն ամուն։ Նա անմիջապես ճանաչեց ինձ։ Ես ասացի, որ ինձ հետապնդում են։ Գնացինք տուն, որտեղ մեզ դիմավորեց Ֆաթմա մայրիկը։ Նա ինձ չճանաչեց, բայց հարգանքով ողջունեց։

— Թե իմանաս, ո՞ւմ եմ բերել, մի մեծ մատաղ կանես,— ծիծաղելով ասաց Սոյուն ամին։

— Ով կուզե լինի, իմ գլխի վրա տեղ ունի,— պատասխանեց Ֆաթմա մայրիկը։

— Այդ այդպես է, բայց մի լավ նայիր, գուցե ճանաչես...

Ես չկարողացա ինձ զսպել։ Շատ տարիներ էին անցել մեր բաժանվելուց հետո, և բացի այդ ես զինվորական համազգեստով էի։ Մոտեցա, ձեռքս պարզեցի և հայտնեցի ով լինելս։

Ֆաթմա մայրիկն ուրախությունից ճչաց, գրկեց ինձ, համբուրեց ու երկար ժամանակ բաց չէր թողնում գրկից։

— Մեծացել ես, բալա՛ ջան,— ասում էր նա,— մինչև անգամ ասկյար ես դարձել։



Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Այդ հանդիպումը այնքան ջերմ էր, որ ես երբեք չեմ մոռանա։

Մեզանից շատ-շատերը Սոյուն ամու նման սրտակից բարեկամներ ունեն։

Դաշնակներն ու մուսավաթականները փորձեցին այդ երկու հարևան ու բարեկամ ժողովուրդներին մեկ-մեկու դեմ թշնամացնել։ Դա, իհարկե, նրանց չհաջողվեց։ Իսկ երբ 1920 թվականին Ադրբեջանում տապալվեց մուսավաթականների, իսկ Հայաստանում դաշնակների անտանելի լուծը, հայ և ադրբեջանցի ժողովուրդների բարեկամությունն ավելի ամրապնդվեց։

# ՆՈՐ ՀԱՐԵՎԱՆՆԵՐ

ՊԵՐՃ ՋԵՅԹՈՒՆՅԱՆ

(Երևանի № 63 դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ)

Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Այ քեզ բա՜ն, երբ լսեցի, որ տղաներն ու աղջիկները միասին են սովորելու, ինչո՞ւ, չգիտեմ, բայց շատ տխրեցի։ Սարսափելի է տեսնել, թե նրանք ինչպես են լաց լինում։ Չէ՞ որ աղջիկները լաց են լինում։

Մի օր մի քանի աղջիկ մտան մեր դասարանը։ Նրանք զուգված էին գույնզգույն ժապավեններով ու էլ ինչ ասես, որ չէին հագել։ Ես համոզվեցի, որ տղաների հագուստները շատ ավելի լավն են։ Նրանք կարմրեցին ու կարծես պատրաստվում էին լաց լինել, բայց չգիտեմ ինչու լաց չեղան։

Մեկին նստեցրին կողքիս։ Ճանաչեցի, մեր հարևան բակի երեխաներից էր։

Դասը սկսվեց, սակայն ոչ մեկս էլ չէինք կարողանում կենտրոնանալ։ Մի տեսակ անհարմար էի զգում։ Բայց մտածեցի, որ երբեք էլ պետք չի անհարմար զգալ։ Ծիծաղս հազիվ զսպեցի, երբ նկատեցի, որ Արամի մոտ էլ նստել է մի գեր աղջիկ։

«Տեսնես կարելի՞ է նրանց ծեծել», մտածում եմ, բայց հիշում նրանց արցունքն ու սարսափում։ Գլուխը քարը։ Պետք է դասը լսել։ Հարևանս շարժվում է, և ես հետաքրքրությամբ նայում եմ, թե նա ի՜նչ է անում։ Ինձ թվում է, թե հարևանուհիս էլ, մյուս աղջիկներն էլ ուրիշ տեսակ մարդիկ են։ Չգիտես ինչու այդ պահին երբեք չէի հիշում մեր բակի աղջիկներին, որոնց հետ խաղում էի, վազվզում։ Զանգը հնչեց։

Մենք վեր կացանք և ամեն մեկս ասպետական դիրք ընդունեցինք։ Ես չգիտեի, թե ասպետները ինչպես են իրենց պահում։ Այդ միայն Արամը կիմանա։ Նա ասպետների մասին շատ է պատմում։ Քանի որ բոլոր տղաները կեցվածքներ ընդունեցին, ես էլ ստիպված էի մի բան անել։ Գլուխս ետ տվի, շրթերս մի քիչ ծռեցի, ձեռքերս գրպանիս մեջ դրեցի։

Այ քեզ բա՜ն։ Լռություն է։ Այդպիսի լռություն



դասի ժամանակ էլ չի լինում։ Թվում է, որ բոլոր աղջիկները ինձ են նայում, իսկ հարևանուհիս նույնիսկ հպարտանում է։

Ես անզգուշությամբ կպա Սուրիկի ոտքին։ Նա խեթ-խեթ ինձ նայեց։

— Դու կո՞ւյր ես։

— Ինքդ ես կույր։

Մենք արհամարհանքով իրար նայեցինք։ Եթե մի ուրիշ անգամ Սուրիկի ոտքին դիպչեի, նա ոչինչ չէր ասի։ Բայց այս անգամ մենք շատ վիրավորված էինք զգում մեզ։

Աղջիկները մի անկյունում հավաքված՝ փսփսում էին։ Երևի մեր մասին։ Տեսնես ում ավելի համարձակ համարեցին։ Ինձ, թե՞ Սուրիկին։

— Սուրի՛կ,— գոչեցի ես,— կռվե՞նք։

— Կռվե՛նք։

Մենք տեսանք, թե ինչպես անկյունում հավաքված աղջիկների աչքերը փայլեցին. Նրանք վախեցած մեզ էին նայում։ Ես և Սուրիկը քիչ էր մնում հարձակվեինք իրար վրա, երբ «զը՜նգ»... զանգը հնչեց։

Եկավ աշխարհագրության դասատուն։ Նա ինձ դաս հարցրեց։ Քարտեզի առաջ գլուխս կախ, ամբողջովին կարմրած կանգնել ու ափսոսանքով մտածում էի, թե ինչպես կորցրի իմ թողած տպավորությունը։ Պատրաստ էի լաց լինել։ Բայց հիշեցի, որ միայն նրանք, այդ աղջիկներն են լաց լինում։

Մուրմանսկը չէր երևում։ Իզուր էի փնտրում։ Լռություն էր։ Ես լսեցի Սուրիկի ձայնը։ Նա երևի ինձ էր ծաղրում։ Զայրույթը ինձ համարձակություն տվեց։ Ես ավելի արագ աչքս պտտեցրի քարտեզի վրայով և ահա քեզ Մուրմանսկը։ Հաղթական նայեցի դասարանին, հետո հարևանուհուս։ Նա հասկացավ, որ պետք է հանգիստ լինել։ Կամ ես այդպես կարծեցի։

Նստեցի տեղս։ Օրագիրս վերցրի ու տվեցի ուսուցչուհուն։ «4» էր նշանակել։ Ես ուզեցի, որ հարևանս այդ մասին իմանա։ Օրագիրս բաց թողեցի ու դիտմամբ, ձեռքով դանդաղ մոտեցնում էի նրան։ Նրա աչքը սահեց օրագրիս վրայով, իսկ ես լրջությամբ քաշեցի այն, չէ՞ որ ամեն ինչով չպետք է զբաղվել։

Այդ օրը արագ-արագ տուն գնացի։ Երբ ես ու Սուրիկը դրսում մենակ մնացինք, նայեցինք իրար և անիմաստ ժպտացինք։ Հետո ծիծաղեցինք ու բաժանվեցինք իրարից։

Տանը պատրաստեցի հաջորդ օրվա դասերը։ Մի քիչ էլ զբաղվեցի Թոշնիկիս հետ, որը վանդակում իրեն շատ վատ էր զգում, ապա իջա բակ։ Ես կանգնել էի աղբյուրի մոտ։ Աղբյուրի ձայնը շատ հաճելի է. հիշեցնում է Թոշնիկիս ձայնը։ Ասենք Թոշնիկս ավելի լավ է երգում։ Հանկարծ լսեցի դույլերի չխկոց ու տեսա կողքիս կանգնած նոր հարևանուհուս։ Հարևան բակի աղբյուրն այդ օրը ցամաքել էր, նա մեզ մոտ էր եկել ջուր տանելու։ Կարող էի չթողնել նրան մեր բակից ջուր տանել։ Հետո՞ ինչ։ Թող նորոգեին իրենց աղբյուրը։ Բայց նա արդեն վաղուց լցրել էր դույլերը և այդ մասին մտածելն ավելորդ էր։ Նա չէր հեռանում, ուշացնում էր գնալը։ Հո այստեղ իջևան չի՞։ Ուզեցի կոպտել, բայց լեզուս չբռնեց։ Միայն ասացի.

— Ինչո՞ւ ձեր բակում աղբյուր չկա։

— Կա՛, նորոգում են։

Ես տխրեցի այդ լուրից։

— Ձեր աղբյուրի ջուրը սառը չի լինի։

— Ինչո՞ւ...

Ես նկատեցի, որ նա բոբիկ է։

— Որովհետև...— այդ «որովհետևը» չգտնվեց։ Իսկապես, ինչո՞ւ նրանց ջուրը սառը չի լինի որ։ Նա հասկացավ և անհարմար դրությունից ինձ ազատելու համար ասաց.

— Ձեր ջուրը սառն է...

Ես և շոյվեցի, և պատրաստ էի շնորհակալություն հայտնել։

— Անունդ ի՞նչ է,— հարցրեց աղջիկը։

Բայց չէ՞ որ ես ավելի շուտ կարող էի հարցնել նրա անունը։

— Երվա՛նդ,— մի փոքր ուշացած պատասխանեցի ես։

— Իմը՝ Լուսիկ է,— ասաց նա։

Ինչո՞ւ ասաց անունը, երբ չէի հարցրել։

— Քո հայրը ինժենե՞ր է։

— Այո, քաղաքի մեծ-մեծ տները նա է կառուցել։

— Փչում ես,— ասացի, բայց զգացի, որ անվայել էր ասածս։

Նա զարմացած ինձ նայեց։

— Ուզում ես՝ մի հավատա։

— Չեմ հավատա։

— Ինչո՞ւ չես հավատում։ Ազնի՛վ պիոներական...

— Չեմ հավատում։ Վե՛րջ։

Նա վիրավորվեց։ Դույլերը վերցրեց, որ գնա, բայց չգիտես ինչու, չէր ուզում, որ հեռանա։

— Տուր ես տանեմ, դու չես կարող։



— Կարող եմ... մինչև հիմա բա ո՞վ է տարել։

— Դու,— պատասխանեցի ու զգալով, որ ինքս ժխտեցի ինձ, շատ նեղացա։ Այ թե շըշմածն էի։

Նա նայեց իմ կողմը։ Նկատեցի, որ կապույտ աչքեր ուներ։ Երևի մտածում էր, որ շատ զարմանալի տղա եմ։

— Դու գիրք կարդո՞ւմ ես,— անսպասելի հարցրեց նա։— Օրը քանի՞ էջ կարող ես կարդալ։

— 200,— փչեցի ես։

Խոսելու բան չկար, իսկ մեզ հարկավոր էր խոսել... Նա վերցրեց դույլերը։ Ես ակամա հետևեցի նրան։ Նա իրենց բակում ավելի համարձակ դարձավ և սկսեց սուլել։ Զարմացա, բայց ինձ ավելի մոտ զգացի նրան. չէ՞ որ նա սուլում էր այնպես, ինչպես կարող էի ես կամ մի ուրիշ տղա։

— Արի մեզ մոտ։ Ես քեզ ցույց կտամ իմ կատվի ձագերին։



— Ես զզվում եմ ձագերից,— արհամարհանքով թթվեցրի դեմքս,— մարդ էլ այդպիսի հիմար բանով կզբաղվի՞։

Մենք ցտեսություն ասացինք իրար ու բաժանվեցինք։ Նրանց բակում երկար մնացի։ Ապա վերադարձա տուն, տեսա Թուշնիկին։ Հարցրեցի մորս.

— Մայրիկ, Թուշուն պահելն է լավ, թե՞ կատվի ձագ։

— Թուշուն,— պատասխանեց նա։

Հաջորդ օրը ուրախ գնացի դպրոց։ Տղաները հավաքվել էին դասարանում։ Մի քանի աղջիկ արդեն եկել էին, մյուսներն ուշանում էին։ Մի քանիսը լուռ անցան մեր մոտով և նկատեցի, որ տղաները նրանց չբարևեցին։ Հանկարծ տեսա հարևանուհուս։ Ես և նա տարիների մտերիմների պես բարևեցինք։

— Բարի լույս,— ասացի ես։

— Բարի լույս,— պատասխանեց նա։

Տղաները զարմացած մեզ էին նայում։ Նրանցից մեկի բերանը ակամա բացվեց ու ասաց.

— Բարի լույս։

Եվ ինքն էլ զարմացած մեզ նայեց։ Երևի գլխի ընկավ, որ դա այնքան էլ ամոթալի չէր։ Մյուսների դեմքերին էլ մի աննկատելի, գաղտնի ուրախություն անցավ։ Նրանք էլ շշնջացին՝ «Բարի լույս», բայց բարձր չասացին։

Եվ ես, գուցե և տղաները, նկատեցի, որ նրանք ունեն այնպիսի հատկություններ, որոնցից զուրկ ենք մենք։ Աղջիկների շարժ ու ձևի, խոսելու ձայնի մեջ կար ինչ-որ քնքշություն, որը շատ դուրեկան էր։ Նրանք ավելի բարի են. ահա նրանցից մեկը սանիտարական պայուսակ է կախել կողքից. երևի հիմա տղաները ամբողջ հոգով կուզեին ծանր վիրավորվել։ Իսկ ամենակարևորը՝ ո՛չ ոք լաց չէր լինում։

Իրար հետևից եկան մյուսները, նրանք մեզ բարևեցին, իսկ մենք պատասխանեցինք շշուկով։ Տղաները մի փոքր շփոթված էին երևում, թվաց, որ նրանք ափսոսում են բարևել աղջիկներին։

Դասն սկսվեց։ Ես հպարտ էի, որովհետև ինքս էի առիթ տվել, որ տղաներն իրենց ընկերության առաջին քայլը կատարեն։ Տղաներն այնքան էլ ձևեր չարեցին։

Ես ուրախ թերվեցի ընկերուհուս կողմը։ Ուզում էի ամեն ինչ հայտնել, ամեն ինչ պատմել, բայց դասի ժամ էր։ Միայն կամացուկ շշնջացի.

— Լուսիկ, ես կատվի ձագ էլ եմ սիրում։ Մեկը չե՞ս տա ինձ։

Նա միայն մի բան էր ցանկանում. թույլ տային մի լավ ծեծեր Տիրանին: Բայց երբ նայում էր ընկերներին, նրանց հայացքների ջերմությունը ամաչեցնում էր նրան: «Ծեծե՞լ, ի՞նչ բան է ծեծելը, մինչև հիմա ո՞վ է ծեծել ինձ, կամ ում վրա եմ ձեռք բարձրացրել ես»,— մտածում էր նա:— «Ո՛չ, ո՛չ, պետք է նրան ծեծել, բայց ոչ ձեռքերով: Ճիշտ է ասում էղվարդը, պետք է մտածել այդ մասին, դա եզակի դեպք չէ, նա ընդհանրապես վատ է վարվում ընկերների հետ, պարծենկոտ է, գոռոզ, պետք է կարմրացնել...»:

«Այո՛, այո՛», ուղեղում ծագած ինչ-որ միտք շշունջով հաստատեց Կորյունն ու ժպտաց:

Տիրանը նայում էր ընկերներին ու զգում, որ նրանց հայացքների մեջ կշտամբանք կա: Ո՛չ ոք չէր ժպտում իրեն, բացի Սերյոժայից, ինչո՞ւ, ի՞նչ է արել ինքը, հա՛, երևի այդպես են անում, որ մաթեմատիկայի ստուգողական աշխատանքների ժամանակ Կորյունից արտագրեն: Գիտեն, որ թույլ չեմ տա, դա կեղծ ընկերասիրություն է... Իսկ Զարիկն ինչո՞ւ է այդպես իրեն նայում: Նա հիշեց, թե ինչպես աղջիկը մոտեցավ, վերցրեց Կորյունի վերարկուն ու խնամքով կախեց: Չէ՞ որ Զարիկը մաթեմատիկան իրենից ու Կորյունից էլ լավ գիտի, ամենադժվար խնդիրը նա կարող է մենակ լուծել...

Ապա նրա հայացքը կանգ առավ իր վերարկուի վրա, ու նրան թվաց, թե անհա վերարկուն ցած ընկավ, իսկ դասարանից դուրս եկող աշակերտներից ոչ մեկը չվերցրեց:

***

Այդ դեպքից անցել էր մի շաբաթ:

Գրքերի պայուսակը ձեռքին Տիրանը մոտենում էր իրենց դասարանին: Նա հանկարծ նկատեց, որ վեցերորդ դասարանի դռան մոտ հավաքվել են շատ աշակերտներ: Նրանք մեկը մյուսին հրելով ձգվում էին դեպի պատի թերթը, ապա իրար հրմշտելով ու ծիծաղելով ետ քաշվում: Երբ Տիրանը անցնում էր նրանց մոտով, ծիծաղն ու քրքիջն ավելի սաստկացան: Նրանց վրա ուշադրություն չդարձնելով, Տիրանն ուզում էր մտնել դասարան, բայց տասներորդ դասարանցի մի տղա կանգնեց նրա դիմաց ու թույլ չտվեց:

— Նայիր պատի թերթին, տե՛ս, հավանո՞ւմ ես:

Մյուսները ճանապարհ տվին: Տիրանը մոտեցավ:

Պատի թերթի քառորդ մասը բռնել էր մի ծաղրանկար: Մի տղա թիկնել էր պատից կախված վերարկուին: Նրա մազերը զզզված էին, դեմքը այլայլված, թևերը երկար, ոտքերը ծուռտիկ-մուռտիկ:

Ձնայած նկարի տակ ոչինչ չկար գրված, բայց Տիրանը ճանաչեց իրեն:



(Չինական առակ)

*Հ. ՍԵՎԱՆ*

Գետի ափին մի տաք օր
Ոստրեն ելավ քնից խոր,
Բացեց խեցին սպիտակ,
Փայլեց, շողաց երկնի տակ:
Մեկ էլ մի ծեր ձկնկուլ
Վազեց դեպի ոստրեն թույլ,
Կտցեց նրա ձեռն ու ոտ,
Արյուն թափեց գետի մոտ:
— Ի՞նչ ես անում անաստված,—
Գոռաց ոստրեն բարկացած,
Բռնեց կտուցը ամուր,
Գլխին թափեց թուք ու մուր:
Այսպես գետից ոչ հեռու
Նրանք առան իրարու...

Այստեղ շահեց ձկնորսը,
Բռնեց-տարավ լավ որսը:

# Խորհրդավոր կապոցը

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

ՊԱՏԿԵՐ ՉՈՐՐՈՐԴ

*Ջոնիկենց տունը. մահճակալի վրա պառկած է Ջոնիկը։ Նա վեր է կենում, դուռը ներսից փակում է, նայում է պատուհանից դուրս։ Հետո մահճակալի տակից հանում է կապոցը։*

ՋՈՆԻԿ.— Հազիվ ժամանակ գտա *(կապոցը դնում է սեղանին)*։ Հիմա տեսնեմ ինչեր կան այս կապոցի մեջ։ Լավ բաներ որ չլինեն, կտանեմ կգցեմ այնտեղ, որտեղից վերցրել եմ։ *(Զգուշությամբ բացում է։ Կապոցից դուրս է թռչում խաղալիք թիթեռը։ Ջոնիկը վախից վեր է թռչում)*։ Վախեցա, հա՛։ Ի՞նչ լավ կոնֆետներ են *(մեկը գցում է բերանը)*։ Վա՜յ, սա էլ ինքնաթիռ է *(լարում ու կախում է առաստաղից, ինքնաթիռը պտույտ է գործում...)*։ Տեսնեմ էլ ի՞նչ կա։

ԱՐԵՎԻԿ.— *(Թակում է դուռը)* Տատի՛, Ջոնի՛կ, դուռը բացե՛ք։

ՋՈՆԻԿ.— *(Շփոթված)* Հիմա, հիմա *(պոկում է ինքնաթիռը, մյուս իրերի հետ դնում է կապոցի մեջ ու թաքցնում մահճակալի տակ)*։

ԱՐԵՎԻԿ.— Դուռը բացե՛ք։

ՋՈՆԻԿ.— *(Գունավոր շորով կապում է այտը, բացում է դուռը)*։ Ի՞նչ ես ձայնդ գլուխդ գցել, չե՞ս տեսնում, որ հիվանդ եմ։ Օ՜ֆ, գլուխս տրաքվում է։

ԱՐԵՎԻԿ.— *(Ներս է մտնում)* Ինչո՞ւ ես հիվանդացել։ Չէ՜... վեր կաց, գնա ջուր բեր։

ՋՈՆԻԿ.— Հիվանդ-հիվանդ գնամ ջո՞ւր բերեմ։

ԱՐԵՎԻԿ.— Այո՛։

ՋՈՆԻԿ.— Ինձ ջուր պետք չէ... Համ էլ ես երեկ եմ ջրի գնացել. այսօր քո հերթն է։

ԱՐԵՎԻԿ.— Դու ինձանից փոքր ես, հասկացա՞ր, պիտի ենթարկվես։ *(Քաշում է վերմակից)* Դե՛ շո՛ւտ, շո՛ւտ։

ՋՈՆԻԿ.— Ասացի՝ հիվանդ եմ, չեմ կարող գնալ։

ԱՐԵՎԻԿ.— Կգնա՛ս։

ՋՈՆԻԿ.— Չե՛մ գնա *(քաշքշում են միմյանց)*։

---

*) Սկիզբը՝ «Պիոներ» № 3 1956 թ.։





ՇԱՄԱՄ.— *(Ներս է մտնում)* Վո՜ւյ, կուրանամ ես, ի՞նչ է պատահել *(Զոնիկը մտնում է վերմակի տակ)*։

ԱՐԵՎԻԿ.— Տատի՛, ասում եմ գնա ջուր բեր, չի գնում, ինչ ծույլ տղա է: Գիտեմ ինչու ես հիվանդացել... որ դպրոց չգնաս, հա՞:

ՇԱՄԱՄ.— Ջուր բերելու համար վիճո՞ւմ եք. լավ, ես կգնամ *(վերցնում է դույլը)*։

ԱՐԵՎԻԿ.— *(Թույլ չի տալիս)* Ոչ, տատի՛, ես չեմ թողնի, որ դո՛ւ գնաս ջրի, ես կգնամ: *(Վերցնում է դույլն ու գնում)*։

ՇԱՄԱՄ.— Որդի՛, ի՞նչ է պատահել քեզ, ինչո՞ւ չես ասում, թե որտեղդ է ցավում:

ԶՈՆԻԿ.— Ասացի էլի՛, գլուխս, կոկորդս, ատամս: Տատի՛, մի էն գիրքը տուր կարդամ:

ՇԱՄԱՄ.— Գլուխդ որ ցավում է՝ ի՞նչ կարդալ:

ԶՈՆԻԿ.— Տո՛ւր, քեզ ասում եմ, իմ գլուխը չի՞, թող ցավի:

ՇԱՄԱՄ.— Դե որ ուզում ես՝ առ *(տալիս է գիրքը)*։

ԱՐԵՎԻԿ.— *(Գալիս է)* Ջուրը բերեցի...

ՇԱՄԱՄ.— Ապրես, Արևիկ ջան, կյանքդ ջրի պես երկարի *(գնում է)*։



ԱՐԵՎԻԿ.— Զոնի՛կ, ես գնում եմ: Վարդուշը որ գա ինձ հարցնի, կասես՝ գնաց Հրանուշի մոտ, հասկացա՞ր *(գնում է)*։

ԶՈՆԻԿ.— Տեսնեմ էլ ինչ կա կապոցի մեջ *(փնտրում է)*։ Օհո՜, ժամացույց *(մոտեցնում է ականջին, հետո կապում է ձեռքին)*։ Չեղավ, այսպես կտեսնեն. սպասիր՝ վիրակապով փաթաթեմ *(կապում է և ապա մոտեցնում ականջին)*։ Չի՛կ, չի՛կ, չի՛կ... Շատ լավն է: Տեսնեմ էլ ի՞նչ կա:

ԱՇՈՏ.— *(Թակելով դուռը)* Զոնի՛կ, ա՛յ Զոնիկ:

ԶՈՆԻԿ.— *(Իրերը թաքցնում է և ապա տնքտնքալով բացում դուռը)* Արի, Աշո՛տ:

ԱՇՈՏ.— *(Գալիս է)* Զոնի՛կ, իսկականի՞ց հիվանդացար:

ԶՈՆԻԿ.— Գլուխս տրաքվում է, գլխիս մեջ անընդհատ չխչխկոցներ եմ լսում, չգիտեմ փչացե՞լ է, թե... *(պառկում է)*։

ԱՇՈՏ.— Ինչո՞ւ, գլխիդ մեջ ժամացո՞ւյց կա, ինչ է...

ԶՈՆԻԿ.— Աշո՛տ, նստիր, շա՞տ տնկիներ տնկեցիք:



ԱՇՈՏ.— Այո՛, քո բաժին տնկիներն էլ տնկեցինք:

ԶՈՆԻԿ.— Դա էլ ո՞ր օրվա ընկեր ես, որ չտնկեիր:

ԱՇՈՏ.— Լավ, բայց ի՞նչ ես մտածում, կապոցը պիտի հանձնե՞ս տիրոջը, թե չէ:

ԶՈՆԻԿ.— Դու գիտե՞ս ով է կապոցի տերը:

ԱՇՈՏ.— Տանենք դպրոց, հանձնենք ավագ ջոկատավարին, նա կգտնի տիրոջը, չէ՞ որ պիոները ազնիվ պիտի լինի:

ԶՈՆԻԿ.— Որևէ մեկին ասե՞լ ես կապոցի մասին:

ԱՇՈՏ.— Միայն մայրիկիս եմ ասել:

ԶՈՆԻԿ.— Ա՛յ, տեսնո՞ւմ ես, որ դու իսկական ընկեր չես. եթե կապոցը քեզ տայի, լա՞վ կլիներ:

ԱՇՈՏ.— Ես կարիք չեմ զգում:

ԶՈՆԻԿ.— Կապոցը հանձնել եմ տիրոջը, պրծա՞նք:

ԱՇՈՏ.— Ո՛չ, չես հանձնել, ստում ես:

ԶՈՆԻԿ.— Հանձնել եմ:

ԱՇՈՏ.— Չես հանձնել:

ՇԱՄԱՄ.— *(Ներս մտնելով)* Վո՛ւյ, քոռանամ ես, ինչո՞ւ եք տաքացել, բարև, Աշոտ ջան:

ԱՇՈՏ.— *(Ոտքի է կանգնում)* Բարև, տատի՛:

ՇԱՄԱՄ.— Նստիր, բալիկ ջան:



ԱՇՈՏ.— Ոչ, ես շտապում եմ, ցտեսություն, տատի՛ *(գնում է)*։

ՇԱՄԱՄ.— Ա՛յ տղա, չլինի՞ թե ձեր միջով սև կատու է անցել:

ԶՈՆԻԿ.— Ոչ մի գույնի կատու էլ մեր միջով չի անցել *(լսում է ժամացույցի չխչխկոցը)*։

ՇԱՄԱՄ.— Չեմ հասկանում *(Գուլպա է գործում)*։

ԶՈՆԻԿ.— Բան չկա, տատի՛ ջան, հետո կհասկանաս *(Իջնում է անկողնուց)*։

ՇԱՄԱՄ.— Ո՞ւր:

ԶՈՆԻԿ.— Գնամ տեսնեմ մայրս ինչո՞ւ ուշացավ:

ՇԱՄԱՄ.— Ա՛յ տղա, դուրս մի՛ գնա, հիվանդ ես:

ԶՈՆԻԿ.— Հիմա մի քիչ լավ եմ, շուտով կգամ *(գնում է)*։

ՇԱՄԱՄ.— Չեմ հասկանում, թե ի՞նչ է պատահել այս տղային, մի բան կա, բայց չի ասում.

*Վարագույր*

## ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ ԵՐՐՈՐԴ

### ՊԱՏԿԵՐ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Ջոնիկենց տանը։ Առավոտ է։ Արևի ճառագայթները պատուհանից թափանցել են ներս։ Ռադիոն հաղորդում է մարմնամարզական վարժությունների դասը։ Արևիկը վերջացնում է վարժությունների կատարումը։*



ԱՐԵՎԻԿ.— Տատի՛, գնամ լվացվելու, սառը ջրով շփվելու *(գնում է)*։
ՇԱՄԱՄ.— Ջոնի՛կ, վեր կաց, դպրոց պիտի գնա՞ս, թե չէ։
ՋՈՆԻԿ.— *(Անկողնում շուռումուռ գալով)* Տատի, հիվանդ եմ։ *(Ծածկվում է վերմակի տակ)*։
ՀԱՅԿՈՒՇ.— Ո՞րտեղդ է ցավում, բալի՛կ ջան։
ՋՈՆԻԿ.— Գլուխս, կոկորդս, ատամս...
ՀԱՅԿՈՒՇ.— Ա՛յ քեզ փորձանք։ Ես գնում եմ աշխատանքի։ Ճանապարհին կմտնեմ բուժարան, բժիշկ կուղարկեմ տուն *(Գնում է)*։
ԱՐԵՎԻԿ.— *(Պայուսակը բռնած)* Տատի՛, թեյեցի, բաժակները ու ափսեները լվացի։ Խոհանոցում ամեն ինչ կարգին է։ Դե, ես գնում եմ դպրոց, իսկ դու, Ջոնի՛կ, էլի՞ պիտի պառկես...
ՋՈՆԻԿ.— Հիվանդ եմ, հիվանդ, հասկացի՛ր։ *(Արևիկը գնում է)*։
ՇԱՄԱՄ.— *(Ջերմաչափը տալով Ջոնիկին)* Վերցրու ջերմաչափը, դիր թևիդ տակ, տեսնենք տաքություն ունե՞ս։



ՋՈՆԻԿ.— *(Վերցնում է ու ձեռքերի մեջ խաղացնում)* Տատի՛, կարո՞ղ ես ասել, թե ով է հնարել ջերմաչափը։
ՇԱՄԱՄ.— Ջերմաչափի հետ խաղ չեն անի, կջարդվի։
ՋՈՆԻԿ.— Դեղատանը ջերմաչափ շատ կա, նորը կառնենք։
ՇԱՄԱՄ.— Ես էլ գիտեմ, որ կա, բայց հայրդ հո կապոցներով փող չի ստանում...
ՋՈՆԻԿ.— Ի՞նչ կապոց։
ՇԱՄԱՄ.— Ասում եմ ծնողներդ կապոցներով փող չեն ստանում, որ դու էլ աջ ու ձախ ծախսես։
ՋՈՆԻԿ.— Հա՛... Հիմա չեմ ասում. երբ մեծանամ, փող վաստակեմ, այն ժամանակ քառասուն հատ ջերմաչափ կառնեմ։
ՇԱՄԱՄ.— Ամա՜ն... *(Գնում է)*։
ՋՈՆԻԿ.— *(Նստում է անկողնում)* Իսկապես, տեսնես ո՞վ է հնարել ջերմաչափը. *(իրերը հանում է)* Տեսնեմ էլ ի՞նչ լավ բաներ կան կապոցի մեջ։ Պա՛հ, էս էլ շոկոլադ է *(գնում է բերանը։ Ոտնաձայն է լսում։ Կապոցը թաքցնում է ներքնակի մեջ, երգում է)*,



ՇԱՄԱՄ.— *(Գալիս է)* Ջոնի՛կ, սոված չե՞ս...
ՋՈՆԻԿ.— Չէ։
ՇԱՄԱՄ.— Ի՞նչ է, առավոտ շուտ շոկոլա՞դ ես կերել...
ՋՈՆԻԿ.— Այո, շոկոլադ եմ կերել։
ԱՇՈՏ.— *(Թակում է դուռը)* Կարելի՞ է *(Ջոնիկը հազալով շտապ մտնում է անկողին)*։
ՇԱՄԱՄ.— Համեցեք, Աշո՛տ ջան։
ԱՇՈՏ.— *(Գալիս է)* Բարև, Շամա՛մ տատի։
ՇԱՄԱՄ.— Բարև, որդի՛ ջան, նստիր Ջոնիկի մոտ, ես գնամ տեսնեմ ջուրը եռա՞ց։ *(Գնում է)*։
ԱՇՈՏ.— Ջոնի՛կ, գնանք դպրոց։
ՋՈՆԻԿ.— Հիվանդ եմ։
ԱՇՈՏ.— Իսկականի՞ց։
ՋՈՆԻԿ.— Այո, իսկականից։
ԱՇՈՏ.— Լավ, հիմա ինձ ասա՝ ի՞նչ արեցիր կապոցը։
ՋՈՆԻԿ.— Տերը եկավ ու տարավ...
ԱՇՈՏ.— Ստում ես, Ջոնի՛կ... Վեր կաց ու բեր... Մայրս ասում է՝ ձվի գողը ձիու գող կդառնա, ես չեմ ուզում, որ իմ ընկերը վատ լինի։ Տե՛ս, բոլորին կասեմ։
ՋՈՆԻԿ.— *(Զայրացած)* Կասե՞ս, հա՞, ուրեմն դավաճանում ես ինձ *(Կոպիտ կերպով հրում է)*։
ԱՇՈՏ.— Ամո՛թ քեզ, Ջոնի՛կ *(Քաշքշում են միմյանց)*։



ՇԱՄԱՄ.— *(Ներս է մտնում)* Վո՜ւյ, քոռանամ ես *(Խփում է ծնկներին)*։ Խենթացե՞լ եք, ինչ է *(Բաժանում է նրանց)*։ Ի՞նչ պատահեց ձեզ։
ԱՇՈՏ.— *(Վերցնելով պայուսակը)* Դե լավ, Ջոնի՛կ, կզղջաս։ Ցտեսություն, տատի՛ *(Գնում է)*։
ՇԱՄԱՄ.— Ի՞նչ պատահեց ձեզ, ինչո՞ւ կռվեցիք։
ՋՈՆԻԿ.— Տատի՜, դու չգիտես, թե ի՜նչ նախանձ տղա է... է՜, ամեն բան քեզ չեմ կարող ասել...
ՇԱՄԱՄ.— Պիոներական գաղտնի՞ք է։
ՋՈՆԻԿ.— Դեռ ավելին է։ *(Պարսատիկը վերցնում և ուզում է դուրս գնալ)*։ Տատի, թվաբանության խնդիրները կլուծես, չմոռանաս, հա՜ *(գնում է)*։
ՇԱՄԱՄ.— *(Մենակ)* Դե, արի ու էս տարիքին խնդիր լուծիր։ Լուծեմ՝ չի լինի, չլուծեմ՝ չի լինի...



ԲԺԻՇԿ.— *(Թակում է դուռը)* Կարելի՞ է:
ՇԱՄԱՄ.— Համեցե՛ք:
ԲԺԻՇԿ.— *(Գալիս է)* Բարև՛ ձեզ, տատիկ:
ՇԱՄԱՄ.— Բարև՛, բժիշկ ջան: Նստեցեք:
ԲԺԻՇԿ.— Ձեր թոռնիկն հիվանդ է, այո՞:
ՇԱՄԱՄ.— Այո, բժիշկ ջան, հանկարծ հիվանդացավ:
ԲԺԻՇԿ.— Իսկ ո՞ւր է հիվանդը, մյուս սենյակո՞ւմն է:
ՇԱՄԱՄ.— Ոչ, բժիշկ ջան, ասաց՝ գնամ, մի քիչ մաքուր օդ շնչեմ:
ԲԺԻՇԿ.— Շամամ տատի, ես շտապում եմ: Վերադարձին կգամ: Ցտեսությո՛ւն *(Գնում է)*:
ՇԱՄԱՄ.— Ցտեսությո՛ւն: *(Սենյակը կարգի է բերում)*:
ՀԱՅԿԱՆԴՈՒԽՏ.— *(Գալիս է Զոնիկի ձեռքից բռնած)* Շամամ քույրիկ, բավական եղավ, թոռիդ սանձը քաշիր, թե չէ վերջը վատ կլինի...



ՇԱՄԱՄ.— *(Զարմացած)* Ի՞նչ է պատահել:
ՀԱՅԿԱՆԴՈՒԽՏ.— Թոռդ քարով խփեց պատուհանիս ապակին ջարդեց:
ՇԱՄԱՄ.— Վո՜ւյ քոռանամ ես... *(Զոնիկին)* Ա՛յ տղա, բա դու գետինը չես մտնո՞ւմ *(Ձեռքից խլում է պարսատիկը և շպրտում. դիպչում է Հայկանդուխտին)*:
ՀԱՅԿԱՆԴՈՒԽՏ.— Էս էլ նոր փորձանք...
ՇԱՄԱՄ.— Ներող եղիր, Հայկանդուխտ ջան: *(Պարսատիկը դուրս է նետում)*: Ա՛յ տղա, բա դու խիղճ չունե՞ս:
ՀԱՅԿԱՆԴՈՒԽՏ.— Ինձ Հայկանդուխտ կասեն, հա՜. *(Զոնիկին)* Լսի՛ր, այ կախզլուխ, մեկ էլ որ անկարգություն ես արել, քեզ կտանեմ Երևան և կհանձնեմ ամենամեծ միլիցիոներին... *(Գնում է)*:
ԶՈՆԻԿ.— Տատի՛, ես մեղավոր չեմ. խփում էի ծտին, դիպավ նրանց պատուհանին...
ՇԱՄԱՄ.— Բա ծտերը մեղք չե՞ն, քեզ ի՞նչ վնաս են տվել: Մի քե՛զ նայիր, ինչի՞ ես նման: Շո՛ւտ գնա լվացվիր...
ԲԺԻՇԿ.— *(Ներս է մտնում)* Հիվանդն արդեն եկե՞լ է: Որտե՞ղդ է ցավում:
ԶՈՆԻԿ.— Գլուխս, ատամս, կոկորդս:
ԲԺԻՇԿ.— Ուրիշ էլ որտե՞ղ...



ԶՈՆԻԿ.— Ոտքս, մեջքս:
ԲԺԻՇԿ.— Իսկ լեզուդ չի՞ ցավում...
ԶՈՆԻԿ.— Ոչ, բայց հազում եմ:
ԲԺԻՇԿ.— Բերանդ լայն բաց արա և ասա ա՜:
ԶՈՆԻԿ.— Ա՜...
ԲԺԻՇԿ.— *(Ստուգում է)* Լավ, բավական է: Հապա տեսնեմ, ջերմություն ունե՞ս: *(Նայում է)* Ջերմություն չկա: Թոքերի աշխատանքը կանոնավոր է...
ՇԱՄԱՄ.— Բժիշկ ջան, թոռնիկիս ի՞նչն է ցավում:
ԲԺԻՇԿ.— Ձեր թոռնիկը...
ՀԱՅԿՈՒՇ.— *(Գալիս է)* Բարև, բժիշկ, ինչպե՞ս է Զոնիկիս առողջությունը:
ԲԺԻՇԿ.— Ձեր տղան առողջ է:
ՀԱՅԿՈՒՇ և ՇԱՄԱՄ.— Ինչպե՞ս թե:
ԲԺԻՇԿ.— Այնուամենայնիվ ձեր տղան տառապում է մի հիվանդությամբ, ծուլությամբ:
ՄԻԱՍԻՆ.— Այ թե ի՞նչ...
ԲԺԻՇԿ.— Դե՛, կներեք, ես շտապում եմ: Ցտեսությո՛ւն *(գնում է)*:
ՀԱՅԿՈՒՇ.— Ա՛յ տղա, եթե հիվանդ չես, ինչո՞ւ ես պառկել:
ԶՈՆԻԿ.— Մեջքս է ցավում, ականջս, աջ աչքս... Բժիշկը չհասկացավ...

*Վարագույր*



## ՊԱՏԿԵՐ ՎԵՑԵՐՈՐԴ

*Զոնիկենց տունը: Շամամը գուլպա է գործում և թթի տակ երգում:*

ԱՐԵՎԻԿ.— *(Ներս է մտնում պայուսակը ձեռքին)* Աշխարհագրությունից ու պատմությունից հինգ եմ ստացել:
ՇԱՄԱՄ.— *(Ուրախ)* Ապրես, Արևի՛կ ջան: Այնպես արա, որ ինձնից էլ հինգ գնահատական ստանաս:
ԱՐԵՎԻԿ.— Ինչի՞ համար:
ՇԱՄԱՄ.— Տնային տնտեսություն առարկայից: Առայժմ իմ առարկայից չորս ունես:
ԱՐԵՎԻԿ.— Իսկ Զոնի՞կը:



ՇԱՄԱՄ.— Զոնիկը՝ մեկ:
ԱՐԵՎԻԿ.— Վա՜յ տատի, ինչ ժլատն ես... Իսկ ո՞ւր է Զոնիկը:
ՇԱՄԱՄ.— Երևի Աշոտի մոտ է գնացել:
ԱՐԵՎԻԿ.— Դժվար թե: Աշոտը նրանից նեղացել է:
ՇԱՄԱՄ.— Իսկ ի՞նչ վատ բան է արել: Ասա՛, պիոներական գաղտնի՞ք է:
ԱՐԵՎԻԿ.— Այո՛: *(Ներս են մտնում՝ Արմանուշը, Հայկուշը, Արտաշեսը):*
ՀԱՅԿՈՒՇ.— *(Դիմում է Շամամին)* Մայրի՛կ, ես գնում էի դպրոց, տեսնեմ Արմանուշն ու Արտաշեսը մեզ մոտ են գալիս:
ՇԱՄԱՄ.— Բարով եք եկել, խնդրեմ, նստեցե՛ք:
ԱՐՄԱՆՈՒՇ.— Շնորհակալություն *(Նստում է)*, նստի՛ր, Արտաշես: Շամա՛մ տատի, Արտաշեսը մեր դպրոցի ավագ ջոկատավարն է: Դե, ինձ էլ գիտեք. Զոնիկի դաստիարակչուհին եմ:
ՇԱՄԱՄ.— Ուրախ եմ:



ԱՐՏԱՇԵՍ.— Շամամ տատի, ո՞ւր է Զոնիկը:
ՇԱՄԱՄ.— Գնաց Աշոտի մոտ:
ԱՐՄԱՆՈՒՇ.— Անցած կիրակի Զոնիկը մի կապոց է գտել և բերել տուն: Խնդրում ենք, որ այդ կապոցը վերադարձնի տիրոջը...
ՀԱՅԿՈՒՇ.— *(Խիստ հուզված)* Իմ Զոնի՞կը, ուրիշի կապո՞ց, ո՛չ, չե՛մ հավատում, նա այդպիսին չի:
ԱՐՄԱՆՈՒՇ.— Հանգստացե՛ք, ընկեր Հայկուշ, հավանաբար Զոնիկն այդ քայլը կատարել է անգիտակցաբար:
ԱՐՏԱՇԵՍ.— Աշոտը սուտ չի ասի:
ՀԱՅԿՈՒՇ.— *(Շամամին)* Մայրի՛կ, լսեցի՞ր: Զոնիկը կապոց է բերել տուն, իսկ մենք տեղեկություն չունենք:
ՇԱՄԱՄ.— *(Խփում է ծնկներին)* Վո՜ւյ քոռանամ ես... *(Զոնիկի ներքնակը տանում է դուրս):*



ԶՈՆԻԿ.— *(Պարսատիկը ձեռքին, երկու սպանված ծիտ կողքից կախած, թափթփված վիճակում ներս է մտնում: Հանկարծակիի գալով)* Վա՜յ, ներողություն, չնկատեցի: *(Ուզում է դուրս փախչել, բայց Հայկուշը բռնում է):*
ՀԱՅԿՈՒՇ.— Սպասի՛ր, ո՞ւր ես գնում... էլի՞ պարսատիկ, տեսնո՞ւմ ես, ովքեր են մեզ մոտ եկել, ամաչիր...
ԱՐՄԱՆՈՒՇ.— Զոնի՛կ, ինչո՞ւ դպրոց չես հաճախում:
ԶՈՆԻԿ.— Հիվանդ եմ... բայց վաղը կգամ:
ՀԱՅԿՈՒՇ.— *(Զոնիկի ձեռքից վերցնում է պարսատիկն ու շպրտում դուրս):* Ո՞ւր է կապոցը:
ԶՈՆԻԿ.— Ի՞նչ, ի՞նչ կապոց...
ԱՐՏԱՇԵՍ.— Զոնի՛կ, մենք իմացել ենք կապոցի մասին: Պետք է վերադարձնել տիրոջը:
ԶՈՆԻԿ.— *(Կմկմալով)* Ի՞նչ եք ասում, ընկեր Արտաշես, ե՞ս...
ԱՐՏԱՇԵՍ.— Այո՛, դու:
ԶՈՆԻԿ.— Աշո՞տն է ասել:
ԱՐՄԱՆՈՒՇ.— Այո, Աշոտն է ասել:



ԶՈՆԻԿ.— Ես վերադարձրել եմ տիրոջը...
ԱՐՏԱՇԵՍ.— Իսկ ո՞վ էր կապոցի տերը:
ԶՈՆԻԿ.— Չեմ հիշում...
ՇԱՄԱՄ.— *(Ներքնակը գրկած, սաստիկ հուզված ներս է մտնում):* Վո՜ւյ, քոռանամ ես, տեսե՞ք, տեսե՞ք *(ներքնակը դնում է սեղանի վրա):* Ահա ձեր ուզածը *(Ներքնակի միջից հանում է կապոցը):*
ՀԱՅԿՈՒՇ.— *(Սաստիկ հուզված)* Հիմա ի՞նչ կասես... Ահա թե ինչո՞ւ ես հիվանդ ձևացել:
ԱՐՏԱՇԵՍ.— Զոնի՛կ, հիմա զգո՞ւմ ես, թե ինչ սխալ քայլ ես կատարել: Դու ես կապոցը բերել, այո՞:



ԶՈՆԻԿ.— *(Հուզված, կարմրած)* Ես իզուր Աշոտին չլսեցի: *(Քանդում է վիրակապը)* Առե՛ք, այս ժամացույցն էլ, գոտին էլ, այս դանակն էլ... չեմ ուզում, ոչ մի բան չեմ ուզում: Ես ուզում էի ետ բերել, բայց...
ԱՐՄԱՆՈՒՇ.— Լավ: Զոնիկը սխալվել է, և ես կարծում եմ, որ նա զղջաց: Զոնի՛կ, ներողություն կխնդրես...
ԶՈՆԻԿ.— *(Հեկեկալով)* Ես սխալվել եմ, այլևս այդպիսի բան չեմ անի: *(Սերոբը, Երվանդը, Վարդուշը և Աշոտը ներս են մտնում):*
ՍԵՐՈԲ.— *(Զարմացած)* Բարև ձեզ *(ընդհանուր զարմանք):*
ԶՈՆԻԿ.— *(Հեկեկում է):* Ես սխալվել եմ, իզուր չլսեցի Աշոտին, սրանից հետո վատ բան չեմ անի: *(Փաթաթվում է Աշոտին ու լաց է լինում):*

*Վարագույր*

# ԳՅՈՒՂԱՑԻՆ ԵՎ ՊԱՐՈՆՆԵՐԸ

(Իսպանական ժողովրդական հեքիաթ)

Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մայրաքաղաքից հեռու մի խուլ գյուղակում ապրում էր մի գյուղացի, որը երբեք թագավոր չէր տեսել։ Նա մտածում էր, որ թագավորը բոլորովին նման չէ մյուս մարդկանց։ Նա ամբողջ կյանքում երազում էր սեփական աչքով տեսնել նրան։ Մի գեղեցիկ օր էլ նա ասաց իր կնոջը.

— Ապա մի լսիր, Մարիանա, ես ուզում եմ մայրաքաղաք գնալ՝ թագավորին տեսնելու։

— Ինչպես երևում է ցնդել ես, մա՛րդ,— պատասխանեց կինը,— ինչ որ խելառության համար, ուզում ես մեր վերջին կոպեկները ծախսել։ Գլխիցդ հանիր այդ միտքը։

— Բայց ես շատ եմ ուզում մայրաքաղաք գնալ,— պնդում էր ամուսինը,— դրա հետ էլ կքաշեն անիծյալ ատամս, որի ցավը չի կտրում։

Նա այնքան թախանձագին էր խնդրում, որ վերջապես կինը համաձայնեց։ Գյուղացին ուրախ-ուրախ ճամփա ընկավ։ Ճանապարհին նա ծախսեց իր բոլոր դրամները։ Վերջապես հասավ մայրաքաղաք և նույն այդ օրը տեսավ թագավորին։ «Ի՞նչ հիմարն էի,— մտածեց գյուղացին,— ախր թագավորն էլ էնպիսի մարդ է, ինչպես ես և բոլոր մարդիկ»։



Նա բացեց քսակը և նկատեց, որ մնացել է միայն կես ռեալ։ Նա շատ քաղցած էր և թարսի պես ատամն էլ այնպես ուժեղ էր ցավում, ինչպես երբեք։ Քաղցից տանջված գյուղացին կանգ առավ կարկանդակներ վաճառողի մոտ և սկսեց մտածել. «Եթե ատամս քաշել տամ, էս վերջին կես ռեալը պիտի տամ վարսավիրին։ Իսկ եթե կարկանդակներ գնեմ, ատամիս ցավը կսաստկանա, հալից կընկնեմ, էլ տուն չեմ հասնի»։

Մտածեց, մտածեց գյուղացին, բայց հնար չգտավ։ Իսկ այդ ժամանակ երկու պարոն էին անցնում նրա մոտով։ Նրանք տեսան կարկանդակներին ագահությամբ նայող գյուղացուն և որոշեցին կատակել նրա հետ։

— Է՜յ, լսի՛ր,— դիմեցին նրանք գյուղացուն,— միանգամից քա՞նի կարկանդակ կուտես։

— Ե՞ս։ Հարյուրից ավելի։

Շուրջը բազմություն հավաքվեց։ Պարոններից մեկն ասաց գյուղացուն.

— Ինչի՞ վրա գրազ գանք։

— Ինչի՞... ա՛յ, եթե հարյուր հատ չուտեմ, ատամներիցս մեկը հանեք, թեկուզ հենց այս ատամս,— ասաց գյուղացին և ցույց տվեց ցավող ատամը։

Պարոնները ծիծաղելով՝ համաձայնեցին։ Երբ նա կուշտ կերավ, ասաց.

— Էլ չեմ կարող, պարոննե՛ր, ես տարվեցի։

Բոլորը ծիծաղեցին։ Պարոնները գոհ իրենց հաղթանակից, կանչեցին վարսավիրին.

— Հենց հիմա հանեք գյուղացու ատամը։

Գյուղացին տխուր դեմք ընդունեց, իսկ պարոններն ավելի բարձր քրքջացին։ Վարսավիրն սկսեց քաշել ատամը։ Գյուղացին տնքում էր, գոռում, և նրա ամեն մի գոռոցին պարոնները պատասխանում էին լիաթոք քրքիջով։

Երբ վերջապես ատամը հանեցին, պարոնները վճարեցին կարկանդակների արժեքը, վարձատրեցին վարսավիրին և դառնալով հավաքվածներին, ասացին.

— Այս գյուղացուց հիմար մարդ տեսած կա՞ք ձեր կյանքում։ Մի քանի կարկանդակի համար ատամը քաշել տվեց։

— Եթե մեզանից որևէ մեկը հիմար է, ապա այդ դուք եք, պարոնա՛յք,— պատասխանեց գյուղացին։— Դուք վճարեցիք կարկանդակների համար, որ ես ախորժակով կերա և հանեցիք իմ վաղուց արդեն ցավող ատամը։ Դուք ինձ ազատեցիք երկու դժբախտությունից՝ մեկ սովից, մեկ էլ ատամնացավից։

Այս անգամ էլ բոլորը ծիծաղեցին պարոնների վրա։ Իսկ ապուշ կտրած ու խայտառակված պարոնները շտապեցին թաքնվել բազմության մեջ, որպեսզի ծաղր ու ծանակի չենթարկվեն։

# ՀԻՆԳ ՊԵՏԵՐ

(Գերմանական ժողովրդական հեքիաթ)

*Մի գյուղում ապրում էին հինգ երիտասարդ՝ հինգ Պետեր։*

*Պետերներից մեկին ջրի ուղարկեցին, մինչև բերեց, դույլի մեջ ջուր չմնաց՝ թափվեց.*

*Մյուս Պետերին հանձնարարեցին վառարանը վառել։ Նա լուցկիներն սպառեց, այրեց, ծծումբի հոտը գցեց, բայց վառել չկարողացավ. ասում է փայտը թաց է։*

*Երրորդ Պետերին հրամայեցին պատին մեխ խփել։ Նա խփեց, խփեց, մատները ջարդեց, բայց մուրճով այդպես էլ մեխին չհարվածեց։*

*Չորրորդ Պետերը կճուճները շուկա տարավ վաճառելու։ Գնում էր սայլով ու մտածում, որ ճամփով գնալը շատ երկար է, ավելի լավ է ուղիղ գնա, մոտ կլինի։ Զին քշեց դարուփոսերով։ Բոլոր կճուճները կոտրվեցին, միայն կտորտանքը տեղ հասավ։ Վաճառելու բան չմնաց։*

*Հինգերորդ Պետերին առաջարկել էին ծառից բալ քաղել։ Նա կտրեց ծառը և ուրախացավ, որ այլևս սանդուղքի վրա բարձրանալու կարիք չի լինի։*

*Ահա հինգ երիտասարդ Պետերներ հավաքվեցին գյուղի ծայրին, աղմկում են, գոռում, գոչում են, ձեռքերը թափահարում օդում։*

*— Մարդիկ մեզ հիմարների տեղ են դնում, իսկ մենք բոլորից էլ խելացի ենք։*

*— Ա՛յ, հիմա գնանք ճանապարհորդենք և ամբողջ աշխարհին զարմացնենք։*

*— Անշուշտ, մի Պետերը օրվա ընթացքում այն գյուղը կհասնի, իսկ մենք Պետեր ենք, հինգ հոգի, ուրեմն հինգ անգամ արագ կգնանք։*

*Եվ հինգ երիտասարդ, հինգ Պետերները, դուրս եկան թափառելու։*

*Գնում են, հրճվում, երդվում մեկը մյուսին՝ երբեք իրարից չբաժանվել։*

*Նրանք արդեն բավականին հեռացել էին իրենց գյուղից, երբ հանկարծ մեկի խելքին փչեց՝ իսկապես բոլոր հինգն էլ ներկա՞ էին, արդյո՞ք որևէ մեկը ետ չի ընկել։ Եվ Պետերն հանկարծ ասաց ընկերներին.*

*— Եղբայրնե՛ր, ճամփա ընկանք հինգ Պետեր, գնում ենք, գնում և չգիտենք, բոլոր հինգս էլ այստե՞ղ ենք. որևէ մեկը ետ չի՞ ընկել։*

*Այդ որ լսեցին, հինգ երիտասարդն էլ, հինգ Պետերն էլ քարացան իրենց տեղում, և նա, ում գլխում ծագեց այդ միտքը, սկսեց համրել.*

*— Ահա մեկը, ահա երկրորդը, երրորդն էլ է այստեղ, չորրորդն էլ... Իսկ ո՞ւր է հինգերորդը։*

*Այս որ իմացան, սաստիկ վախեցան, նրանցից մեկը պակասում է։*



*— Սպասեք,— ասաց մի ուրիշ երիտասարդ՝ մյուս Պետերը,— թողեք ես հաշվեմ, ես ճիշտ կհաշվեմ, ապա զինվորների նման, շարվի՛ր... սկսում եմ հաշվել՝ այս մեկ, այս երկու, այս երեք, այս էլ չորս։ Նորից մեկը պակաս է։*

*Խեղճ հինգ երիտասարդ, հինգ Պետերներ հաշվեցին մեկը մյուսին, հաշվեցին բարեխղճորեն և ամեն անգամ չորս հոգի էին դուրս գալիս։ Պատճառն այն էր, որ ոչ ո՛ք իրեն չէր հաշվում։*

*Այն ժամանակ մի Պետեր ասաց.*

— Ես արդեն գլխի ընկա, հասկացա, թե ինչպես պետք է մեզ հաշվել։ Ես այնպես կհաշվեմ, որ ճիշտ դուրս կգա։ Դե լսեք, հենց որ ես կասեմ մեկ, երկու, երեք, թող ամեն մեկն իր անունը տա։ Քանի անուն որ լսվի, այնքան էլ Պետեր կլինի։ Ապա... մե՛կ, երկո՛ւ, երե՛ք։

— Պետե՛ր,— բացագանչեցին հինգ երիտասարդ, հինգ Պետերները միաբերան և այնքան բարձր և այնպես եռանդով ու միանգամից, որ մի անուն միայն լսվեց։

— Այ քեզ հրա՞շք,— ասացին նրանք,— բանից դուրս է գալիս, որ չորս հոգի էլ չենք, այլ միայն մեկ։

Նրանք այդպես էլ մինչև այսօր կմնային ճանապարհի վրա կանգնած և կհաշվեին իրար, եթե նրանց բախտից մի ճամփորդ չմոտենար։ Մոտեցավ նա և հարցրեց, թե ինչ է պատահել, ինչի մասին են վիճում։

Հինգ երիտասարդ, հինգ Պետերները առանց թաքցնելու ամեն ինչ պատմեցին անցորդին և չմոռացան նույնիսկ ավելացնել, որ մարդիկ նրանց հիմարների տեղ են դրել, երբ իրականում նրանք, հինգ երիտասարդները՝ հինգ Պետերներն Ամենից խելացի մարդիկ են աշխարհիս երեսին։

Անցորդը համբերությամբ լսեց, հետո ասաց.

— Ես կօգնեմ ձեզ այդ դժբախտությունից ազատվելու համար. խորհուրդ կտամ, թե ինչպես կարելի է հաշվել՝ քանի երիտասարդ եք, քանի Պետեր։ Բոլորդ այստե՞ղ եք, որևէ մեկը հո ետ չի՞ ընկել։ Միայն դրա համար բոլորդ էլ պետք է չորեքթաթ անեք։

— Էդ հո շատ հասարակ բան է,— ասացին հինգ երիտասարդ, հինգ Պետերները,— ձեռքերն ու ոտքերը մերը չե՞ն՝ ուզենանք կանենք։

Անցորդը դեռ աչքն էլ չէր թարթել, երբ հինգ երիտասարդ, հինգ Պետերն արդեն չորեքթաթ էին արել ճանապարհի մեջտեղում։

— Ա՛յ, այդպես լավ է,— նկատեց անցորդը,— իսկ հիմա քթներդ խրեք կավի մեջ, հետո վեր կացեք և հաշվեք ձեր քթերից առաջացած փոսերը։

Հինգ երիտասարդ, հինգ քաջարի կտրիճ Պետերներն իրենց քթերը խրեցին ճանապարհի կավի մեջ, քթերով փոսիկներ արեցին, հետո վեր կացան և հաշվեցին. ստացվել էր հինգ փոսիկ։

Թե որքան ուրախացան հինգ Պետերները, ո՛չ պատմելն է հնարավոր, ոչ էլ նկարագրելը։ Հիմա արդեն նրանք ստույգ գիտեին, որ բոլոր հինգն էլ ներկա են, զարմանալի բան է, հինգից ո՛չ մի երիտասարդ, ոչ մի Պետեր չէր կորել։

Հինգ երիտասարդ, հինգ Պետերներն ուրախ ու զվարթ հրաժեշտ տվին անցորդին և թեթևացած սրտով շարունակեցին իրենց ճանապարհը։

Ասում են նրանք մինչև հիմա էլ դեռ ճանապարհորդում են։ Դուք նրանց երբևիցե չե՞ք հանդիպել։



# Ջունգլիներում



Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

— Ջունգլիներում մի անգամ,—
Սկսում է Վահրամը։
— Էլի փչում ես, Վահրա՛մ,—
Ծիծաղում է Մարիամը։
— Սուտ չեմ ասում, հավատա՛.
Ա՛յ, տես սպին։
— Ի՞նչ է դա։
— Հապա՛, վագրն է ճանկռել։
— Պա՞հ, կատուն է դա արել։
— Չէ՛, ֆեռուս տանն է կատուն,
Մորս հարցրու, երբ գա տուն։

Սա վագրը ինձ է արել,
Ա՛յ, ճանկն էլ հետս եմ բերել։
Տղան կողքի սենյակից,
Որսորդ պապի դարակից
Արջի մագիլ է հանում։
Մարիամիկը զարմանում,
Հավատում է այս անգամ.
— Պատմիր, պատմիր, շո՛ւտ,
Վահրա՛մ։
Բռնած ճանկը սև ու մեծ,
Ահա տղան ինչ պատմեց.

— Ջունգլիներում հորս հետ
Անցանք մի նեղ արահետ,
Եկանք, հասանք մի բացատ:
«Ես հոգնեցի այսօր շատ,
Մի քիչ քնեմ: Դու հսկիր,
Որ գազան գա, կրակիր»,—
Ասաց հայրս ու քնեց:
Շուտով անտառն էլ մթնեց,
Ու ջունգլիում դարավոր
Իջավ գիշեր ահավոր:
Վագր ու հովազ մռնչում,
Բուն է անվերջ կռնչում,
Էլ բորենի, վայրի խոզ,
Էլ կապիկներ շատախոս,
Գայլ, ռնգեղջյուր ու լուսան,
Ամեն սողուն ու գազան
Միացել են ու մթնում
Ինձ են իբր վախեցնում:
Բայց ես նստել եմ անահ.
Չինված մարդն էլ վախենա՞:
Կես գիշերից մի քիչ անց
Մի մեծ վագր կատաղած,
Բացած բերանն իր հսկա՝
Թռավ ուղիղ ինձ վրա...
— Վա՜յ,— Մարիամիկն է ճչում
Ու տեղից վեր է թռչում:
— Սուտ ասացի ես էլի,
Ի՜նչ գազաններ, ի՜նչ ջունգլի,—
Հանգստացնում է նրան
Մեր հերոսը սուտասան:
Բայց աղջիկն է դեռ լալիս.
—Չէ, հավատս չի գալիս...
Բա ի՞նչ հետք է քո դեմքին,
Այդ ի՞նչ ճանկ է ահագին,
Բա որ վագրը քեզ ուտե՞ր...
— Մի՛ լա, տե՛ս, չի կերել դեռ:
Դեմքս կատուն է ճանկռել,
Ճանկն էլ պապս է տուն բերել...



# ԳԱՐՆԱՆԱՄՈՒՏԻՆ

Ա. ՍԵԿՈՅԱՆ

Լուսանկարները՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

1

*Այդ օրը դասից տուն վերադառնալով՝ Կարինեն համարյա ընկավ առաջին պատահած աթոռին, գրկում սեղմեց պայուսակը և սկսեց լաց լինել: Մայրը, գործը կիսատ թողած, նրան էր նայում:*

*— Ռաֆիկը... Սուրիկը... Անահիտը... Մարգարիտան...,— լալով թվարկում էր Կարինեն:*

*Մայրը հարցական հայացքով նայում էր աղջկան ու չէր հասկանում, թե նա ինչո՞ւ է տալիս իր դասընկերների անունները:*

*— Պարզ խոսիր, ոչինչ չեմ հասկանում,— արդեն բարկացավ մայրը:*

*Կարինեն քիթը վեր քաշեց ու ձեռքի ափով մաքրեց երեսը, աչքերը:*

*— Տատյանա Դմիտրևնան... նրանց... նրանց պահեց դասարանում... երգում... երգում են գրում ... պիոներ դառնալու համար...*

*— Իսկ քե՞զ ինչու չպահեց:*

*— Չգիտեմ... ասում է...*

*Այստեղ Կարինեն կտրեց լացն ու գլուխը կախեց: Մայրն սպասում էր:*

*— Ասում է... դպրոցից «2» ես ստացել...*

*— Դե, ուրեմն ինչո՞ւ ես լաց լինում: Երբ կվերացնես երկուսդ, այն ժամանակ էլ կխնդրես, որ քեզ էլ ընդունեն:*

*— Հետո ասում են... ինը տարեկանից են ընդունում,— ավելացրեց Կարինեն:*

*— Դա արդեն ոչ ինձնից, ոչ էլ քեզնից է կախված,— ժպիտով ասաց մայրը:— Քո ինը տարին լրանում է աշնանը:*

*— Իսկ դու իմ ծննդյան օրը շուտ կատարիր,— լացը վերսկսելով ասաց Կարինեն:*

*— Ինչպե՞ս կարելի է, միևնույն է, դու նորից ութը տարեկան ես մնալու:*

*— Դե որ այդպես է, մի անգամ վաղը կատարիր, մի անգամ էլ իսկական օրը:*

*Մայրը ծիծաղեց:*

*— Եթե այդքան բան էլ չես հասկանում, նշանակում է՝ ճիշտ է վարվել Տատյանա Դմիտրևնան:*

*Եվ իրոք Պուշկինի անվան դպրոցի երկրորդ «գ» դասարանում թե՛ տարիքով և թե՛ արտաքինով ամենափոքրը Կարինե Հարությունյանն է:*

*Կարինեի մայրը որոշեց հաջորդ օրը դպրոց գնալ և մանրամասնորեն տեղեկանալ, թե ո՞վքեր*



Նոր Բայազետի Սարուխանյանի անվան դպրոցի ատաղձագործական խմբակի անդամներ՝ Լ. Խանդոյանը և Փ. Զարդարյանը նորոգում են ջարդված աթոռը։

իրավունք ունեն պիոներական կազմակերպության շարքերն ընդունվելու։

— Պիոներ կարող են դառնալ երկրորդ դասարանից, միայն ինը տարեկան լավ սովորող աշակերտները,— մի փոքր հանդիմանորեն նայելով Կարինեին՝ բացատրեց Տատյանա Դմիտրևնան։— Իսկ դու վերջին գրավոր աշխատանքից «2» ես ստացել։ Ապա դառնալով մորը, դաստիարակչուհին շարունակեց։— Տառեր է բաց թողնում, տառեր և դա միայն անուշադրության հետևանքով։ Երբ ես նրան առաջարկեցի գրատախտակին գրել այդ բառերը, նա բոլորն էլ ճիշտ գրեց։ Անընդհատ խոսում է կողքի աշակերտի հետ, խանգարում է դասը, հաճախ նկատողություն է ստանում։ Իսկ եթե ցանկանա, լավ կսովորի... շատ գեղեցիկ ձեռագիր ունի, գրում է հիանալի։

Կարինեն կպել էր մորը և գողունի նայում էր դաստիարակչուհուն։

— Իսկ թե տանն ինչպես է պահում իրեն, այդ արդեն դուք պետք է ասեք,— եզրափակեց ուսուցչուհին։

Այդ ժամանակ նրանց էր մոտեցել դպրոցի ավագ ջոկատավար Լիդիա Իվանովնան։ Մայրը մտահոգվել էր՝ ի՞նչ անել, ինչպե՞ս վարվել։

— Տատյանա Դմիտրևնա, իսկ եթե նա վերացնի այդ «2»-ը, լավ սովորի և դառնա խելոք աղջիկ, տարվա վերջում կընդունե՞ք նրան պիոներական կազմակերպության մեջ,— վերջապես հարցրեց մայրը։— Չէ՞ որ տարեվերջին էլ դեռևս չի լրանա Կարինեի ինը տարին։

Ուսուցչուհին նայեց ավագ ջոկատավարին։

— Եթե իրոք խելոքանա և լավ սովորի, տարվա վերջում կընդունենք,— լուրջ ասաց ջոկատավարը։— Մենք կանենք այդ բացառությունը։

Երբ մայրիկի հետ բակ էր մտել, Կարինեն հարցրեց նրան, թե ե՞րբ է գալու այդ օրը, ինչքա՞ն է սպասելու։ Ցույց տալով իրենց պատշգամբի առջևի միակ եղևանին, մայրն ասաց.

— Ա՛յ, երբ որ ծաղկի մեր եղևանին...

## 2

Այդ օրվանից ամեն անգամ, երբ Կարինեն դպրոցից տուն էր դառնում, ուշադիր նայում էր եղևանու բարակ ոստերին, ուռած, կանաչ բողբոջներին ու նոր ներս մտնում. «Ե՞րբ պետք է գար այդ օրը...»։

Նրա համար կարծես թե բոլորովին ուրիշ կյանք սկսվեց. նա այլևս չէր սպասում, որ մայրն իրեն զգուշացներ դասերը պատրաստելու։ Առավոտյան ինքն էր եղբորը տանում մանկապարտեզ, որը հեռու չէր գտնվում։

Մի օր էլ մայրը նրա համար բերեց սև կազմով փոքր մի գիրք, որը կոչվում էր «Ընկեր»։ Պարզվեց, որ այնտեղ գրված էր, թե ինչ պետք է իմանա պիոները, ինչպես պետք է լինի նա տանը, դպրոցում, հասարակության մեջ։

— Հայկ ջան, եկ ես էլ քեզ համար կարդամ,— ասում էր նա եղբորն այն ժամանակ, երբ իրենք մենակ էին մնում տանը։

Այ քեզ զարմանալի բան. գրքում գրված էր նաև, որ փոքրերը երբեք չպետք է միջամտեն մեծերի խոսակցությանը։ Բայց չէ՞ որ հայրիկն այդ մասին հաճախ էր նրան դիտողություն անում։ Նա ամաչեց դրա համար և որոշեց լինել այնպիսին, ինչպես լինում են պիոներները։

— Այդ ժամանակ ներս մտավ հարևանուհիներից մեկը, երեխաները միասին ոտքի ելան և ասացին.

— Բարև, Հայկանո՛ւշ տատիկ...

Կինը հիացած պատասխանեց երեխաների

թարևին, շոյեց նրանց գլուխները և, իմանալով, որ մայրը տանը չէ, գնաց։

Երեխաներն ինքնագոհ նայեցին իրար, ժըպտացին երկիմաստ՝ այն բանի համար, որ տատիկը չիմացավ, թե իրենք որտեղից էին սովորել դա, և կրկին տարվեցին գրքով։

Իսկ եղրևանու բողբոջներն արդեն սիսեռի մեծության էին հասել։ Կանաչը փոխվում էր բաց մանիշակագույնի, այնպես որ, երբ Կարինեն դիտում էր ուշադիր, թվում էր, թե չրացված ծաղիկներ էր տեսնում՝ գնդասեղի գլխից էլ մանր...

Նախաճաշելուց հետո նա նոր էր ձեռքն առել դասագիրքը, երբ բակի երեխաները կանչեցին խաղալու։ Նա իսկույն թողեց ամեն ինչ ու դուրս թռավ։ Սակայն երկու քայլ չարած՝ մեխվեց տեղում. ինչպե՞ս խաղա, երբ դասերը չի պատրաստել...

— Չե՛մ ուզում... ախր ես դեռ դասերս չեմ էլ պատրաստել...

Եվ նա արագ ներս մտավ, որպեսզի հանկարծ չփոխի որոշումը։

Այդ օրը նա ինքն էլ գոհ մնաց իրենից...

Երեկոյան, քնելուց առաջ, երբ մայրն ուզեց իմանալ, թե լրիվ պատրաստե՞լ է դասերը, Կարինեն գլխով արեց ու անկողին մտավ։ Բայց... չքնեց։ Նա ինքն էլ գիտեր, որ անգիր արտասանելիս ոտանավորի վերջին տողերը խառնում է։ Ի՞նչ անել։ Իսկ լույսը վառում էին ընդհանուր սենյակից... մայրը կիմանար... Հիմա Կարինեին տանջում էր ոչ այնքան դասը լավ չիմանալը, որքան մորը ճիշտ չասելը...

Երբ մայրն արթնացավ, փոքր սենյակից ինչ-որ քչփչոց էր լսվում։ Կարծես Կարինեի ձայնն էր։ Նա վախեցավ. տաքությո՞ւն ուներ աղջիկը, թե՞ երազում էր... Նա անաղմուկ մոտեցավ կիսաբաց դռանը և... մնաց սառած. մահճակալի մեջ, ծնկները կրծքին սեղմած, հենց գիշերանոցով նստել էր Կարինեն։ Լուսնի ներս ընկած շողերի տակ նա երբեմն նայում էր ոտքերի տակ դրված գրքին, ապա գլուխը վեր բարձրացնելով՝ անգիր ասում։ Երբ մայրը ներս մտավ, Կարինեն իսկույն ծածկվեց վերմակի տակ։ Նա արդեն լրիվ գիտեր ոտանավորը։

### 3

Գարուն էր։ Տաք, գեղեցիկ գարուն, ինչպես լինում է Երևանում։ Դասերը վերջացնելուց մեկ ժամ հետո Կարինեն դուրս եկավ դպրոցից և սկսեց վազել դեպի տուն։ Դուռը բացվելուն պես նա ճչաց.

— Մայրի՛կ... տե՛ս...

Շնչահեղձ լինելով, մատներն իրար խառնելով, նա պայուսակից հանեց տետրը և բացելով այն՝ բոլորովին մոտ պահեց մորը.

— Նայի՛ր...

Դասարանական ընդհանուր գրավոր աշխատանքի տակ կարմիր թանաքով գրված էր «5» թվանշանը և Տատյանա Դմիտրևնայի կարճ ստորագրությունը...

— Իսկ ինչո՞ւ ուշացար,— ուրախությունը պահելով հարցրեց մայրը։— Որտե՞ղ էիր։

— Ես... հետո մի քանի հոգի մնացել էինք... դրատախտակից արտագրում էինք պիոներական երդումը,— բառերը կուլ տալով, արագ-արագ ասաց Կարինեն։— Վաղը մեզ պիոներական շարքերն են ընդունում... պետք է երդում տանք...

Նրա աչքերը փայլում էին, ձայնը դողում էր։

— Լիդիա Իվանովնան ասաց, որ ծնողներն էլ կարող են գալ... դու կգա՞ս...



Նոր Բայազետի Սարուխանյանի անվան դպրոցի աշակերտները փայտամշակման արտելում։

Այլևս չհամբերելով՝ մայրը գիրկն առավ աղջկան ու երկար սեղմեց կրծքին։

— Իհարկե, կգամ... անպայման կգամ...

Մայրը չէր պատկերացնում, որ այդ բանից ինքն էլ կարող էր այդպես հուզվել. չէ՞ որ մի քանի օր առաջ ինքը պահարանից հանել ու խնամքով արդուկել էր մետաքսե կարմիր վզկապը, որ հանդիսավոր կերպով կապելու էին իր երեխայի վզին...

Մայրը բացեց պատշգամբի լուսամուտը։ Գարունն իր հետ ներս բերեց նոր ծաղկած եղրևանու անուշ բույրը...

— Վա՜յ... արդեն բացվել են ծաղիկները,— զարմացած բացագանչեց Կարինեն։

Առաջին օրն էր, որ նա չէր նայել ծաղկած եղրևանուն։

# ՎԱՐԴԳԵՍ ՍՈՒՐԵՆՅԱՆ

Նկարչի սեղանի վրա դրված էր մի գիրք: Տարիներ շարունակ, ամեն օր, երբ նա հոգնում էր մեծածավալ կտավների վրա աշխատելուց, ձեռքն էր վերցնում այդ գիրքը, բերում, նորից կարդում և նկարում էր, անընդհատ նկարում:



...Ահա գառնուկ ախպերը Մանուչի հետ: Գնում են երկու որբուկները ամայի դաշտով, գնում են նրանք լավ օրերի հույսը սրտներում: Ահա փոքրիկ Արեհատը, որը խորթ մոր հալածանքներից փրկություն էր գտնում բնության մեջ: Ահա Մոխրոտը, որը խորթ մոր հալածանքներից փրկվելու համար շտապում է տուն: Սակայն, կոշիկը, ոսկե կոշիկը մնացել է ճանապարհին... Հայկական ժողովրդական հեքիաթները անսպառ նյութ են հանդիսացել մեծանուն նկարիչ Վարդգես Սուրենյանի ստեղծագործությունների համար: Հեքիաթներում նա տեսնում էր իր ժողովրդի ծանր կյանքը, բայց տեսնում էր նաև ժողովրդի խորը իմաստությունը, նրա հավատը լավագույն ապագայի հանդեպ:

Վարդգես Սուրենյանը ծնվել է 1860 թվականին: Սովորել է Մոսկվայի նկարչության, քանդակագործության և ճարտարապետության ուսումնարանում, ապա Մյունխենի գեղարվեստների ակադեմիայում: Վերադառնալով Մոսկվա, նա իր լավագույն ստեղծագործությունները ցուցադրել է Պերեդվիժնիկների ընկերության ցուցահանդեսներում:

Վ. Սուրենյանը խոշոր հայրենասեր էր, մեծ հումանիստ: Նրա լավագույն ստեղծագործությունները՝ «Ոտնակոխ արված սրբություն», «Հռիփսիմե եկեղեցին», «Շամիրամը Արա Գեղեցիկի դիակի մոտ» և մյուսները հագեցված են մեծ հարգանքով և հավատով հայ ժողովրդի կարողությունների, նրա անցյալի, ներկայի և ապագայի հանդեպ:

*«Մոխրոտը» հեքիաթի նկարազարդումներից մեկը:*





*Շամիրամը Արա Գեղեցիկի դիակի մոտ:*

Վարդգես Սուրենյանն իր գունանկարչական և գրաֆիկական, քանդակագործական և ճարտարապետական աշխատանքներով, թատերական ձևավորումներով, թարգմանություններով, հոդվածներով պատվավոր տեղ է գրավում իր ժամանակի առաջավոր ինտելիգենցիայի շարքում:

Դեռ մանուկ հասակում նրան առաջին ներկերը նվիրեց աշխարհահռչակ ծովանկարիչ Հովհաննես Այվազովսկին: Նրա նկարների մասին գովեստով են խոսել Ի. Ռեպինը և անվանի քննադատ Վ. Ստասովը: Մոսկվայի գեղարվեստական թատրոնում նա ծանոթացավ Ա. Չեխովի և Կ. Ստանիսլավսկու հետ, նրա մտերիմ ընկերներն էին Հովհ. Հովհաննիսյանը, Ալ. Ծատուրյանը և Ալ. Սպենդիարյանը:

Վ. Սուրենյանի լավագույն ստեղծագործությունների զգալի մասը ցուցադրված է Հայաստանի Պետական Պատկերասրահում:

Մ. ՂԱԶԱՐՅԱՆ

# Հրաշագործ ԿՎԱՐՑԸ

Թ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ
(Երկրաբանական գիտությունների թեկնածու)

Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ

Երկրաբանական թանգարան այցելելիս կամ հանքավայրերի հավաքածու տեսնելիս՝ դուք անշուշտ նկատած կլինեք կվարցի սրածայր վեցանիստ բյուրեղները:

Այդ թափանցիկ, կանոնավոր ու գեղեցիկ բյուրեղներն առաջացել են բնության մեջ գործող բյուրեղացման օրենքի շնորհիվ:

Կվարցի բյուրեղները հաճախ հասնում են զգալի մեծության և կշռում են մի քանի տասնյակ փութ: Բայց կվարցի կանոնավոր բյուրեղները շատ քիչ են:

Այդ ապակենման հանքաքարի մանր ու անկանոն բյուրեղներով հարուստ են գրանիտային քարատեսակները:

Կվարցը շատ ամուր և դիմացկուն հանքաքար է: Գրանիտների հողմահարման ժամանակ նա պահպանվում է գրանիտից ստացվող ավազի հսկայական կուտակումներում: Իսկ թե ինչ օգուտ է տալիս ավազը, դուք կիմանաք, երբ էքսկուրսիա կազմակերպեք դեպի ապակու գործարան:

Այնտեղ խոշոր վառարաններում, թեժ կրակի վրա փայլատակում է ապակու հրահեղուկ զանգվածը: Նրանից պատրաստում են զանազան ձևի ու մեծության շշեր, անոթներ, և այլ ապակե ամաններ:

Մյուս ցեխում պատրաստվում է ապակու մասսան: Սենյակում կան սպիտակ ավազի բազմաթիվ կույտեր: Ավազը խառնում են սոդայի կամ սուլֆատի ու կրի հետ: Այդ խառնուրդը հալվելով տալիս է այն հրահեղուկ ապակին, որից ջանվորները ձևավորում և պատրաստում են բազմազան ապակե ամաններ ու իրեր:

Կվարցի ավազի մեջ եղած երկաթի աննշան քանակությունն ապակին ներկում է կանաչ գույնով և փչացնում նրա որակը: Բարձրորակ թափանցիկ ապակի ստանալու համար օգտագործում են մարգանեց կամ ուրիշ նյութեր:

Գործարանի քիմիական լաբորատորիայում ապակու հետ նորանոր փորձեր են կատարվում:

Լաբորանտը վերցնում է ապակե անոթներից մեկը և դնում կրակի վրա: Անոթի հատակը շիկանում և կարմրում է: Հետո լաբորանտը մի բաժակ սառը ջուր է լցնում այդ շիկացած ապակե անոթի մեջ: Թվում է, թե անոթը պիտի փշուր-փշուր լինի, բայց ոչ, անոթը չի ջարդվում, և ջուրն էլ սկսում է եռալ:

Պարզվում է, որ այդ անոթը պատրաստված է մաքուր կվարցից, իսկ այդպիսի անոթը տաքությունից գրեթե չի ընդարձակվում և ցրտությունից էլ չի սեղմվում: Այդպիսի ապակին շատ թանկ է և այդ պատճառով էլ դեռևս լայն գործածություն չունի:

Կան կվարցի զանազան ու գեղեցիկ տեսակներ՝ ոսկեգույն, վարդագույն և այլն:

Կվարցը շատ լայն կիրառում ունի ժամանակակից տեխնիկայում. օգտագործվում է կաուչուկի արդյունաբերության մեջ, նրանով գործվածքներին ու ներկերին փայլ են տալիս, որոշում դրանց որակը: Մաքուր կվարցի հալված զանգվածից պատրաստում են այնպիսի բարակ թելեր, որոնց հաստությունը հազիվ 0,0005 միլիմետր լինի: Այդպիսի երկու հարյուր թելից կստացվի մեկ միլիմետրանոց հաստությամբ թել: Կվարցը խիստ անհրաժեշտ է նաև ռադիո-ընդունիչների, սուզանավերի և ուրիշ շատ բնագավառների համար: Լավորակ կվարցի հանքեր գտնելը մեծագույն ծառայություն է հայրենիքի հանդեպ:



# «ԿԱՄՈ»

«Ըստ իմ համոզմունքների՝ դուք մի մարդ եք, որը կարողացել է հնարագիտությունն ու արտասովոր կամքի ուժը, գրեթե հեքիաթային համարձակությունն ու անձնազոհությունը միաձուլել իր մեջ»: Այսպես է արտահայտվել Մաքսիմ Գորկին հայ ռևոլյուցիոներ, Լենինի զարծին նվիրված Կամոյի մասին:

Կամոն (Սիմոն Արշակի Տեր-Պետրոսյան) վաղ հասակից ծանոթանում է Թիֆլիսի ռևոլյուցիոն ընդհատակյա կազմակերպության աշխատանքին: Հետո ներգրավվում է այդ կազմակերպության շարքերը, մասնակցում ուսանողների հավաքույթներին, օգնում նրանց զաղտնի թռուցիկներ և պրոկլամացիաներ տարածելուն: Ուսանողները նրան կատակով անվանեցին Կամո, ռուսերեն КОМУ բառը КАМО արտասանելու պատճառով:

Այսպես ստացավ նա իր ռևոլյուցիոն մականունը:

Կամոն որտեղ էլ որ լիներ, ինչ բարդ գործ էլ նրան հանձնարարեին, առանց հապաղելու ճշտությամբ կատարում էր:

1905 թվականի ռևոլյուցիայի եռուն օրերին հանձնարարվում է Կամոյին կատարելու այս կամ այն անհրաժեշտ գործը:

Գաղտնի տպարան կազմակերպելու հանձնարարությամբ, մի անգամ Կամոն դուրս է գալիս տնից, որպեսզի որոշի տպարանի տեղը: Նա նկատում է, որ մեկը հետապնդում է իրեն: Կամոն կորցնում է իր հետքը լրտեսի աչքից և ինքն է հետևում նրան՝ իմանալու, թե որտեղ է բնակվում նա: Այդ նույն մարդու աչքի առաջ, նրա տանը կից եկեղեցու բակում էլ Կամոն հիմնում է տպարանը և սկսում է արգելված գրություններ տպագրել:

Ռուսական առաջին ռևոլյուցիայի պարտությունից հետո աշխատելն ավելի դժվար էր դարձել, բայց Կամոն համարձակ կերպով ձեռնարկում է ավելի դըժվար գործերի:




Ցարական կառավարության ցուցումով Բեռլինում ձերբակալում են Կամոյին, որտեղ նա գտնվում էր Դմիտրի Միրսկի անվան տակ: Այս անգամ արդեն մահապատիժն անխուսափելի էր: Լենինը Կամոյի ազատման միակ ելքը գտնում էր այն, որ նա պետք է հոգեկան հիվանդ ձևանա: Լենինի այս միտքը հայտնում են Կամոյին: Եվ նա երկու տարի անընդհատ Բեռլինի հոգեբուժարանում կարողանում է խաբել հմուտ հոգեբույժ պրոֆեսորներին: Նրան ենթարկում են անասելի տանջանքների, անխնա ծեծում են, ծակում մատները, ասեղներ անցկացնում եղունգների տակ, շիկացրած երկաթներով խարանում են մաշկը, բայց չեն ընկճում ամուր կամքի տեր մարդուն:

Բեռլինի հոգեբուժական հիվանդանոցից Կամոյին տեղափոխում են Թիֆլիս և նետում Մետեխի բանտը, որտեղ նրան նորից են տանջում: Սակայն նա դարձյալ չի ընկճվում և ազատվելու հույսը չի կորցնում: Դատարանի որոշմամբ նրան տեղափոխում են հոգեբուժական հիվանդանոց: Այստեղ նրան հաջողվում է կապվել ընկերների հետ: Ստանալով սղոցներ և այլ անհրաժեշտ պարագաներ, կտրում է շղթաները և հարմար միջոցին փախչում: Նոր առաջադրանքներ ստանալով, նա մեկնում է Փարիզ, տեսակցում Լենինի ու Կրուպսկայայի հետ և նորից վերադառնում: Թիֆլիսում Կամոյին ձերբակալում են և ուղարկում տաժանակրության: Աքսորավայրից նա քրոջը գրում է. «Մի քիչ տկար եմ մարմնով, սակայն առույգ եմ և սպասում եմ լավ, շատ լավ օրերի»:

Դեպքերով հարուստ է եղել Կամոյի կյանքը, որն անձնուրաց կերպով պայքարում էր մեր երջանկության համար: Կամոյի կյանքը այժմ էլ շատ ուսանելի է մեր և գալիք սերունդների համար:

Այս ամենի մասին պատմում է Մ. Կորյունի «Կամո» վիպակը:

Կարդացեք այդ հետաքրքրական գիրքը:

# «ՈՒՐԱԽ ՕՐ»




*Ինչքա՜ն լավ է ապրել Սովետական Հայրենիքում, լինել խելոք ու կարգապահ, սիրել ուսումը։*

*Ոչ ոք չի սիրում ծույլ, թափթփված Ալիկին ու Շողիկին։ Բայց բոլորն էլ սիրում են մաքրասեր Պետիկին։ Նա ամեն օր առավոտյան շփում է իր մարմինը սառը ջրով, մարզանք է անում, շրջում է մաքուր օդում, չի վախենում ցրտից։ Դրա համար էլ առողջ է ու ամրակազմ։*

*Երեխաները գնում են կրկես և այնտեղ փիղ տեսնում, որը սարի չափ մեծ է, իսկ երբ ոտքերը գետնին է դնում, կարծես թե գետինը շարժվում է ծանրությունից։*

*Փիղը մտավ կրկեսը,*
*Բռնեց կրկեսի կեսը...*

*«Փիղը», «Ճայթուկ» և ուրիշ շատ ոտանավորներ կան Վ. Տալյանի «Ուրախ օր» մանկական գրքույկում։*

*Գիրքը նկարազարդել է Վ. Կաժոյանը։*

## «ԴՊՐՈՑԱԿԱՆ ԽԱՂԵՐ»

Հրապարակի հակառակ կողմերում, իրարից տաս-քսան քայլ հեռավորության վրա գծված են երկու տուն: Խաղացողներից երկուսը նշանակվում են «սառնամանիք», որոնք կանգնում են դաշտի կենտրոնում երկու տան միջև: Մնացած բոլոր խաղացողները հավաքվում են տան մեջ:

Խաղն սկսելու համար «սառնամանիքները» երեխաներին դիմում են հետևյալ խոսքերով՝

— Ով ձեզանից սիրտ կանի,
Թո՛ղ գլուխը դուրս հանի...

Հետո բոլոր խաղացողները թողնում




են իրենց տունը և վազում դեպի մյուսը: «Սառնամանիքները» նրանց որսում և ցրտահարում են դեռ տուն չհասած: Ում բռնեցին կամ խփեցին, նա պետք է տեղնուտեղը անշարժ կանգնի:

Վազողները «ցրտահարվածներին» կարող են ազատել՝ նրանց ձեռք տալով:

Ուրախ, հետաքրքիր ու բովանդակալից խաղեր են զետեղված Մ. Մամիկոնյանի «Դպրոցական խաղեր» գրքում:

Գիրքը բաղկացած է մի քանի բաժիններից:

Պիոներներ, ձեռք բերեք այդ գիրքը, սովորեցեք և խաղացեք այդ խաղերը:

# ՀԵՏԱՔՐՔԻՐ

### ԿԱՐՈ՞Ղ ԵՍ ԱՐԴՅՈՔ

*(2 միավոր)*

Այս տախտակի կտորը բաժանել երկու հավասար և միա-



նման մասերի այնպես, որ այդ կտորներից հնարավոր լինի պատրաստել քառակուսի մակերես ունեցող տախտակ:

### ԲԱԺԱՆԻՐ ՉՈՐՍ ՄԱՍԻ

*(3 միավոր)*

Փորձիր շախմատի տախտակը բաժանել չորս հավասար



և միանման մասերի այնպես, որ ամեն մի մասում գտնվի մեկական խաղաքար:

# ՎԻԿՏՈՐԻՆԱ

(10 միավոր)

1. Ո՞ր ծովանկարիչն է, որ տվել է ավելի քան վեց հազար կտավ: Թվեցեք այդ նկարչի մի քանի նշանավոր կտավների անունները:

2. Ռուս ո՞ր նկարիչն է նկարել մայր արջին և նրա երեք քոթոթներին, Շիշկինի նշանավոր «Առավոտը սոճիների անտառում» կտավում:

3. Ո՞ր նշանավոր ռուս նկարչի վրձնին է պատկանում «Սերմնացրավները վերադարձել են» ճանաչված կտավը:

4. Ռուս ո՞ր նկարիչն է նկարել Պուշկինին Այվազովսկու «Պուշկինի հրաժեշտը ծովի հետ» կտավում:

5. Ռուս ո՞ր նկարչի վրձնին է պատկանում «Պոմպեի վերջին օրը» կտավը:

6. Ո՞վ է «Զապորոժցիներ» ճանաչված կտավի հեղինակը: Թվեցեք այդ նկարչի ճանաչված նկարները:

7. Ո՞վ է «Դյուցազունները», «Ալյոնուշկա» կտավների հեղինակը:

8. Ռուս ո՞ր նկարչի վրձնին է պատկանում «Եռյակը» հայտնի կտավը: Այդ նկարչից թվեցեք մի քանի նշանավոր գործեր:

9. Երեք սովետական նկարիչներ գործում են մեկ անվան տակ: Ովքե՞ր են այդ նկարիչները, ի՞նչ միացյալ անվան տակ են գործում և ի՞նչ նշանավոր կտավներ ունեն:

10. Ո՞վ է «Նորի՞ց երկու», «Վերաքննություն» ճանաչված կտավների հեղինակը:

*Կազմեց Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկը՝ նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*






Ձեռագրերը չեն վերադարձվում


**Խմբագրական կոլեգիա**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, Հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՅ Պատվեր 387: Տիրաժ 5000: Տպագրական 4 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/IV 1956 թ.:*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության Գլխավոր վարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65:*



# ԴՊՐՈՑԱԿԱՆ ԳՈԳՆՈՑ

Գոգնոցի լայնությունը պետք է լինի 40—50 սանտիմետր (գծ. № 1), ուսակապերինը՝ մինչև 18 սմ. (գծ. № 3): Գոգնոցի և ուսակապերի երկարությունը պիտի վերցնել այնպես, որ պատրաստի գոգնոցը դպրոցական համազգեստից կարճ լինի 10 սմ: Գոտին պետք է լինի երկտակ, 10 սմ. լայնությամբ:

Նշված չափսերով թղթից համապատասխան կտրվածքներ պատրաստելուց հետո դրանք ամրացրեք կտորեղենի վրա և մկրատով ձևեք գոգնոցը, կարելու համար ավել թողնելով 1—1,5 սմ.:




Ամենից առաջ կարեք գոգնոցի ներքևի եզրը և կողքերը, ապա վերևի մասը փոք արեք այն հաշվով, որ լայնքը պակասեցվի 8—10 սմ.: Դրանից հետո կարեք գոտին, այնպես, որ կոճկելու տեղը լինի ձախ կողմում (գծ. № 5): Հետո օղակ բացեք և կոճակ կարեք գոտկի վրա: Ուսակապերի եզրերը ծալեք 2—2,5 սմ. և կարեք: Դրանից հետո ուսակապերի մեջտեղը 5—6 ծալք արեք (գծ. № 4) և հարթուկելուց հետո կարեք գոգնոցին (գծ. № 2):

# ՀԵՌԱԽՈՍ



Թելի և ստվարաթղթե երկու տուփիկի օգնությամբ կարելի է պատրաստել պարզագույն հեռախոս:



Երեք-չորս սանտիմետր լայնություն ունեցող ստվարաթղթի շերտիկից սոսնձեք երկու օղակ, որոնց տրամագիծը հավասար լինի 4 սմ.: Հետո այդ օղակներին սոսնձեք մոմած կամ պատնենահան թուղթ, մեջտեղը անցք բացեք և տասնհինգ մետր երկարություն ունեցող թելի ծայրերը անցկացրեք այդտեղից ու տուփիկների ներսում կապեք լուցկու հատիկից:

Խոսելիս տուփիկը մոտեցրեք բերանին, իսկ լսելիս՝ ականջին: Դուք կզգաք կամաց, բայց լսելի շշնջոց: Թելը ձգեք այնպես, որ ոչ մի առարկայի չկպչի:

Երբ ձեռք բերեք երկու զույգ ռադիոականջակալ, կարելի է երկու հարյուր մետր տարածության վրա իսկական հեռախոս անցկացնել: Հեռախոսագիծը անցկացվում է մեկ կամ երկու մեկուսիչ լարով: Ականջակալները պետք է միացնել հեռախոսալարերին: Երբ լարը մեկ հատ է, ապա երկրորդ լարի փոխարեն ականջակալները կարճ մետաղալարով միացրեք ջրատար խողովակի կամ հողի մեջ խրված երկաթյա ձողի:

Գլխակալը մի հեռախոսատուփի հետ պետք է հագցնել գլխին, իսկ երկրորդը հանել գլխակալից և պահել ձեռքում: Դա փոխարինում է միկրոֆոնի, որը խոսելիս պետք է մոտեցնել բերանին և խոսել մեջը:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ՄԵՐ ՊԱՏԱՆԻ ՆԿԱՐԻՉՆԵՐԸ





Երևանի Պիոներների պալատի նկարչական խմբակի անդամներ Ռ. Ղևոնդյանի «Բնանկար» (յուղաներկ), Գ. Գասպարյանի՝ «Մեր բակը» (յուղաներկ), Ֆ. Պապանյանի՝ «Հիդրոէլեկտրակայանի շինարարությունը» (ջրաներկ) գործերը։